ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 7 1964

ՓԱՅԼԱԿ ԱՆԹԱԲՅԱՆ

# ՎԱՐԴԱՆ ԱՐԵՎԵԼՑՈՒ ՆԵՐԲՈՂԸ՝ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՅՈՑ ԳՐԵՐԻ ԳՅՈՒՏԻՆ

*Մեծ տարոնացու՝ Մեսրոպ Մաշտոցի կողմից իրագործված հայոց գրերի գյուտի բախտորոշ նշանակությունը մեր ժողովուրդը գիտակցել է շուրջ 1600 տարի շարունակ: Ուստի, հասկանալի է, թե ինչու հայ ժողովրդի գրչի ու դպրության մշակներից շատերը, սկսած Կորյունից մինչև Սիամանթո և մեր օրերի բանաստեղծներն ու պատմաբանները, ասել են իրենց սրտի ու մտքի երախտագիտական խոսքը Մեսրոպ Մաշտոցի մեծ գործի մասին:*

*Հայ դպրության այդ մշակներից մեկն է նաև XIII դարի բազմարդյուն գիտնական, մանկավարժ ու մատենագիր Վարդան Արևելցին, որն իր ստեղծագործություններում քանիցս անդրադարձել է հայոց գրերի գյուտին, այն էլ բավականաչափ ինքնուրույն և հանգամանալից: Իր «Տիեզերական պատմություն»[1] և Հեթում թագավորի պատվերով գրած «Ժղլանք»-ի[2] էջերում ուշագրավ մի շարք կետեր կան, որոնք որոշակի արժեք են ներկայացնում մեր գրերի գյուտի պատմության համար: Ըստ մի շարք վկայությունների[3], նա է հեղինակել նաև մեր թարգմանիչներին նվիրված «Որք զարդարեցին» շարականը, որը նույնպես առնչվում է գրերի գյուտին: Իր «Աշխարհացույց»-ի[4] մեջ ևս մի փոքր ակնարկ կա գյուտի մասին:*

*Ինչպես տեսնում ենք, Վ. Արևելցու ցայսօր մեզ հասած հարուստ մատենագրության մեջ հայոց գրերի գյուտը արծարծվել է մեկից ավելի անգամներ, և այն միշտ էլ եղել է հեղինակի սրտին մոտիկ՝ իբրև մշակութային, քաղաքական ու հայրենասիրական մեծ իրադարձություն: Այս տեսակետից առանձնապես ընդգծելի և պատշաճ գնահատության արժանի է նրա մի ներբողը՝ նվիրված Սահակ Պարթևին, Մեսրոպ Մաշտոցին, գրերի գյուտին և թարգմանիչների գործունեությանը: Ճիշտ է, այն տպագրվել է դեռևս 1853 թ. Վենետիկում լույս տեսած Սոփերքի Բ հատորի մեջ[5], սակայն հրատարակիչներին հայտնի չի եղել նրա գրության ժամանակն ու հեղինակի ով լինելը: Այս շատ կարևոր հարցին, բարեբախտաբար, հնարավոր է լինում պատասխանել միայն հիմա, Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող մի ձեռագրի ընձեռած տվյալներով: Ձեռագիրը կրում է 8775 համարը: Այն ընդօրինակվել է 1415 թվա-*

---

1 Վ. Արևելցի, Պատմութիւն տիեզերական, Մոսկվա, 1861, էջ 70—74:

2 Տե՛ս Մաշտոցի անվան Մատենադարանի ձեռագրեր № 750, թ. 115բ, № 1242, թ. 195բ և այլն:

3 Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, հատոր Ա, Երևան, 1959, էջ LXVI, LXVII, LXIX, LXXI, LXXIII.

4 Վ. Արևելցի, Աշխարհացոյց, Փարիզ, 1960, էջ 22, 47:

5 Սոփերք, հատոր Բ, Վենետիկ, 1853, էջ 6:

կանին, Երուսաղեմում, Գրիգոր վարդապետի ձեռքով և հանդիսանում է ճառերի ժողովածու։ «Յաճախապատում» ճառերից, Ներս. Շնորհալու «Թուղթ ընդհանրականից» և Հակոբ կաթողիկոսի մի կոնդակից բացի, սույն ձեռագրի մեջ զետեղված են նաև Վ. Արևելցու 5 ներբողները*։

*Ստորև տալիս ենք այդ ներբողների խորագրերն ու սկզբնատողերը։*

Ա.—Նախադրութիւն ճառիս վասն սրբոյն Գրիգորի մեր Լուսաւորչի, ասացեալ սրբոյ վարդապետին Վարդանայ ի խնդրոյ տեառն Համազասպայ Հաղբատեցոյ:

Ճառ ներբողենի պատմագրաբար յարմարեալ խորհրդական իմաստիւ նուշակաւոր և մեծիմաստ վարդապետին Վարդանայ՝ յերիցս երանեալ Պարթեւն Գրիգորիոս լուսաւորիչ հայոց ազգիս:

*Աւրհնեալ տէր աստուած հարցն մերոց և աւրհնեալ է անուն սուրբ փառաց նորա ի տաճարի իւրում և ի վերայ հաստատութեան աթոռոյ իւրոյ*[6]։

Բ.—Նորին Վարդանայ հոգելի և բանիբուն վարդապետի, ասացեալ բան գովեստի սրբոյն Գրիգորի Լուսաւորչի:

*Եւ արդ սկսանիմք այժմ մեծապէս սիրով ըստ յուսոյն յորդորման մտաց աչօք նայել ի դիտաւորութիւն ճառիս, թերեւս ոչ գտանիցիմք ամաչեցեալք*[7]։

Գ.—Նորին Վարդանայ բանիբուն և շնորհալի վարդապետի ասացեալ դրուատ գովեստի պատմագրաբար յորդիս և ի թոռունս մեր Լուսաւորչին:

*Բաղձանք սրտի իմոյ բորբոքի և անարժանութիւնս իմ նըհանջեալ կասեցուցանէ ի յօժարութենէս*[8]։

Դ.—Նորին Վարդանայ վարդապետի ասացեալ բան գովեստի պատմագրաբար վասն սրբոյն Սահակայ և Մեսրոպայ և այլոց թարգմանչացն:

*Արդ, ի նըստել սրբոյն Սահակայ Պարթեւի յաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, և զի էր սուրբն Իսահակ որդի Մեծին Ներսէսի՝ որդոյ Աթանագինի, որդոյ սրբոյն Յուսկայ, որդոյն Վրթանայ, որդոյ սրբոյն Գրիգորի*[9]։

Ե.—Ի բաղձանաց բարեպաշտ թագաւորին հայոց Հեթ[ու]մոյ և Քրիստոսասէր հօր նորա բարեպաշտ իշխանաց իշխանին պարոն Կոստանդեայ դրուատ գովեստի պատմագրաբար, ասացեալ մեծին Վարդանայ Արեւելցւոյ ի սուրբ հայրապետսն մեր ի Վահրամ-Գրիգորիս վկայասէրն և ի յորդիսն Ապիրատայ ի տէր Գրիգորիսն և ի Ներսէսն, ի թոռունսն յետին սրբոյ Գրիգորի Լուսաւորչին:

*Կենդանարարըն մեր Քրիստոս ի կենսաբեր աւետարանին կենդանի ձայնիւ արձանացոյց խրատս կենսատու, վառելով զլոյս շնորհաց, եթէ զերագն զոր լուցանեմ ի հողեղինաց յորդոց Ադամայ, վառելով զլոյս շնորհաց իմոց ի բանական հոգիս նոցա, որպէս ի պատրոյգս*[10]։

Վերը թվարկված ներբողներից առաջինը (նվիրված Գր. Լուսավորչին) դեռ շատ վաղուց հայտնի էր բանասիրությանը։ Երկրորդը, երրորդը և հինգ-

---

* Վ. Արևելցու սույն աշխատությունների վերոհիշյալ ձեռագրում զետեղելու մասին մեզ տեղեկություն է հաղորդել բանասիրական գիտությունների թեկնածու ընկ. Ա. Մնացականյանը, որին հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը։

6 Մատենադարանի ձեռ. № 8775, թ. 221ա—242բ։

7 Նույն տեղում, թ. 243ա—253բ։

8 Նույն տեղում, թ. 253բ—278բ։

9 Նույն տեղում, թ. 279ա—300բ։

10 Նույն տեղում, թ. 301ա—319ա։

երորդը առաջին անգամ են հայտնաբերվում։ Երրորդի՝ Գր. Լուսավորչի թոռներին նվիրված ներբողի առկայության մասին ակնարկ ունի Հ. Ոսկյանը։ Նա ուշադրություն է դարձրել Վ. Արևելցու՝ Հովհան Օձնեցուն նվիրված ներբողի հետևյալ խոսքերի վրա. «Յետ խօսելոյն (մեր—Փ. Ա.) ...եւ ի Լուսաւորիչն և ի սուրբ զաւակս նորա»[11]։ Եվ այս կապակցությամբ իր «Յովհաննէս Վանական վարդապետ և իր դպրոցը» մենագրության մեջ գրել է հետևյալը. «Դարձյալ Օձնեցվո ներբողեն կիմանանք, թե Վարդան երգած է ուրիշ մը «Ներբող ի սուրբ զաւակս նորա (այսինքն Լուսավորչին, Արարատ, 1888, էջ 581), որ դեռ երևան չէ եկած»[12]։

Սույն երեք ներբողներն էլ ընդգրկում են միևնույն նյութը, շարունակում են և՛ առաջին ներբողը, և՛ իրար, գովերգելով Գր. Լուսավորչի տոհմը։ Այս նորահայտ ներբողների մեր գնահատությունը վերապահում ենք մեկ այլ առիթի։

Չորրորդ ներբողը, որը ուսումնասիրվում է սույն հոդվածում և հանձնըվում հրատարակության, Սոփերքում լույս տեսածի կարևոր տարբերակն է։

Բոլոր ներբողներն էլ միևնույն գրչի արդյունք են։ Գրվել են XIII դարի կեսերին, ժամանակի ամենակարկառուն անձնավորություններից մեկի՝ Վ. Արևելցու կողմից։ Մենք այս որոշակի եզրակացությանն ենք եկել ելակետ ունենալով հետևյալ փաստերը.

Ա. Սույն ձեռագրի 66 տարեկան գրչի 1415 թ. գրած հիշատակարանից պարզվում է, որ դեռևս XV դարի սկզբին և դրանից առաջ էլ վերոհիշյալ ներբողները անհերկրայորեն վերագրվել են միևնույն «Բանիբուն» Վարդան վարդապետին։

Բ. Բանասիրության մեջ վաղուց արդեն հայտնի է, որ սույն ներբողներից առաջինը Վ. Արևելցու գրչի արգասիքն է։

Գ. Երրորդը որոշակիորեն Հ. Ոսկյանի ենթադրածն է, հետևաբար՝ Վ. Արևելցու հեղինակությունը։

Դ. Նորահայտ ներբողներից հինգերորդը, որը Հեթում Ա թագավորի պատվերով է գրվել, իր խորագրում Վ. Արևելցու անունն ունի որոշակիորեն։ Որ այս անվան սույն տեղում հիշատակության մեջ որևէ պատահականություն կամ կեղծիք չկա, այդ մասին կասկածելն ավելորդ է թեկուզ միայն այն պատճառով, որ Վ. Արևելցին այդ նույն Հեթում թագավորի պատվերով գրել է նաև այլ աշխատություններ, իսկ մեկ այլ Վարդան անունով մատենագրի հետ վերջինիս գործակցության մասին որևէ տվյալ չկա։ Ուստի կարծում ենք, որ վերոհիշյալ փաստերը բավարար են ասելու, որ հիշատակարանում և խորագրերում հիշատակված Վարդանը Վարդան Արևելցին է, հետևաբար բոլոր վերոհիշյալ ներբողների, այդ թվում և սույն հոդվածում ներկայացվող ներբողի հեղինակը նույն ինքը Վ. Արևելցին է։

Չորրորդ, գրերի գյուտին նվիրված ներբողի նորահայտ ձեռագիր օրինակը Սոփերքում հրատարակված տարբերակի համեմատությամբ ավելի լրիվ է, ունի մի շարք հավելյալ հատվածներ, պարբերություններ, առանձին բառեր ու տարընթերցվածներ, որոնք ամբողջացնում են ներբո՛ղը և ավելացնում նրա շահեկանությունը։ Նրանց թվում են այնպիսիները, որոնց մեջ նկարագրվում կամ

---

[11] «Արարատ», 1888, էջ 581։
[12] Հ. Ո ս կ յ ա ն, Հովհաննես Վանական և յուր դպրոցը, Վիեննա, 1922, էջ 72։

մանրամասնվում և ավելի են շեշտվում Հայաստանի և հայ ժողովրդի քաղաքական կյանքի վիճակն ու տրամադրությունները մինչև գրերի գյուտը և նրանից անմիջապես հետո, ցավ է հայտնվում մեր անկախության կորստյան համար, ընդգծում են թարգմանիչների անձնական հատկանիշները, մեծարվում է նրանց պատմական գործունեությունը, ավելի շատ է խոսվում քաղդեացիների, հրեաների, լատինացիների գրերի գյուտի մասին և այլն:

Բերենք այդ հատվածներից մի երկուսը: Այսպես օրինակ, այդ հատվածներից մեկում գրված է. «Վասնզի ուր ոչ լինէր մերձ սուրբն Սահակ կամ Մեծն Մեսրոպ, ոչ կարէին իմանալ զվերծանութիւն գրոց ու զրկեալ լինէին ի լուսաւոր պատուիրանացն աստուծոյ, ունայն լինէր ունկնդրութիւն լսողացն և զուր աշխատութիւն ընթերցողացն:

Յամօթ լիցին այնոքիկ, որք ասէին, թէ ընաւ ընդէ՞ր թարգմանեցին ի հայ բարբառ զգիրս սուրբս, թող կացեալ մնացեալ էաք ի նոյնն, և զի՞նչ շահ աւգտի լինէր ի վերծանութենէ աստուածային տառից՝ յորժամ ոչ ոք իմանայր»[13]:

Մի այլ տեղ, գրերի գյուտն արձանագրելուց հետո, ասված է. «Այժմ բերկրեցաք սրտիւ, ցնծացաք հոգւով, զուարճացաք մտօք, զուարթացաք Էրեսօք: Այժմ ի խնդութենէ ի վեր վազեմք, կայթեմք ձեռօք, կաքաւեմք ոտիւք, պարեմք ամենեքեան...: Սեղան հոգեւոր պատրաստական է, բաժակն իմաստութեան մատրուակի...»[14]:

Թարգմանիչների մասին խոսելիս ի միջի այլոց գրված է նաև հետևյալը. «Ընդ ծովս կրուէին, ընդ ալիսն մարտնչէին, հողմոց ընդդիմանային, նեղութեանց համբերէին, օտարութեան տանէին, նախատանաց ժուժկալէին, միայն ուման ուշ ունէին և արդիւնաւոր շահից... զարդարելով զհայք իմաստութեամբ և վեհագունիցն յունաց՝ պանծալիս ցուցանելով զգիտութիւնս մեր ազգաց բազմաց»[15]:

Անդրադառնալով Հայաստանի և հայ ժողովրդի քաղաքական վիճակին, այդ հատվածներից մեկ ուրիշում ասված է. «Աղեղնաւորք քո անկան, և սուսերաւորք քո կործանեցան, քաջազունք քո վրիպեցան, և զօրաւորք քո վիրավորեցան, բնակութիւնք քո աւերեցան..., և զիակունք անթաղ մնացին: Որքան ճանապարհք երթեեկաց, որքան ճանապարհք ուխտաւորաց, որքան տեղիք աղօթից, որքան ժողովք բնակչաց: Կանայք՝ տխրեալք, կուսանք՝ սգացեալք, հարսունք՝ ողբացեալք... լքեալ և բացընկեցեալ ժողովուրդք՝ իբրև զհովանի մրգապահաց և որպէս տաղաւար յայգոջ, ոչ իմաստուն ճարտարապետ և ոչ հանճարեղ խորհրդական՝ զի օժանդակեսցեն»[16]:

Իսկ մի այլ տեղ այս կապակցությամբ գրված է այսպես. «...Ո՞վ ոք յեղանակեսցէ ի վերայ քո (Հայաստան—Փ. Ա.) զդաշնակումն, որպէս և պարտն պահանջէ: Եւ կամ ո՞ր ողբերգակ նուագեսցէ ի վերայ քո զողբս, որպէս արժան է: Երեմիա չէ ի միջի, և Դաւիթ վաղ ուրեմն հրաժարեաց, և թէ այլ ոք է ողբերգակ, այժմ ոչ երեւի»[17]:

Մեկ այլ հատվածում, բավականին հանգամանորեն խոսելով ընդհանրապես գրերի ստեղծման մասին, ի միջի այլոց ասված է նաև հետևյալը. «...Եւ

---

13 Նույն տեղում, թ. 281ա:

14 Նույն տեղում, թ. 283բ:

15 Նույն տեղում, թ. 286ա:

16 Նույն տեղում, թ. 290ա:

17 Նույն տեղում, թ. 289բ:

զի առաջինքն երկարկեցութեամբ ուսուցանէին զմիմեանս, իսկ ի կարճակեաց լինելն մարդկան, ոչ կարէին վարժել և կրթել, վասնորոյ հնարեցան գրով թողուլ զյիշատակ անցելոց իրաց և զուսմունս բանից։ Եւ արդ, որպէս ասացաւ, թէ ամենայն ազգ հնարիւք արարին գիրս իւրեանց լեզւին, բայց միայն Իսրայէլ և Հայք, որ յաստուծոյ ընկալան։ Եւ այս ոչ փոքրագոյն պատիւ ազգիս մերում, զի որպէս ի հինն Իսրայէլ միայն պատուեցաւ աստուածագիծ տախտակօքն, ի նորս՝ Հայք միայն ընկալան յաստուծոյ աստուածատուր պարգև զգիր ազգիս մերոյ...»[18]։

Այս հատվածներն ու պարբերությունները ծավալով կազմում են հիշյալ ձեռագրի շուրջ 300 տողը։ Այս առթիվ պետք է նշել նաև այն, որ ձեռագիր օրինակի և տպագիր տարբերակի տարբերությունը կայանում է նաև նրանում, որ վերջինիս մեջ երբեմն մանրամասնված, երբեմն էլ համառոտագրված են որոշ հատվածներ և, հազվադեպ, որոշ պարբերություններ էլ՝ տեղաշարժված։

Թեև մեզ հայտնի չէ, թե տպագիր տարբերակի հրատարակիչները ո՞ր և ի՞նչ ժամանակաշրջանի ձեռագիր են ունեցել ձեռքի տակ, այնուամենայնիվ որոշ վերապահությամբ կարող ենք ասել, որ ձեռագիր օրինակի ուսումնասիրությունը և նրա համեմատությունը տպագիր տարբերակի հետ մեզ բերում են այն հավանական եզրակացության, որ տպագիրը բնագրի հետագա խմբագրությունն է միայն, մինչ ձեռագիրը, եթե ներբողի բուն սկզբնագրի հարազատ արտագրությունը չէ, ապա նրան ավելի մոտիկ կանգնած մի ընդօրինակություն է։ Սակայն հարկ ենք համարում նշել, որ սույն և այլ հարակից հարցերի վերջնական լուսաբանության համար հետագայում մեկ կամ մի քանի այլ ձեռագիր օրինակների երևան գալը մեծապես օգտակար կլիներ։

Քանի որ կարելի է այժմ որոշակիորեն ապացուցված համարել, որ Սոփերքի էջերում լույս տեսած ներբողի հեղինակը Վարդան Արևելցին է, ուստի և գրման մոտավոր ժամանակը մեզ հայտնի է, և գիտենք նաև ձեռագիր օրինակի մի քանի արժեքավոր նորությունների մասին, անցնենք նրա ընդհանուր և հակիրճ բնութագրությանն ու գնահատությանը։

Վ. Արևելցու հուզականությամբ և ջերմ շնչով գրված վերոհիշյալ ներբողը գրերի գյուտն ու նրանով իրագործված գրական թարգմանչական գործունեությունը ճշգրտորեն և բարձր գնահատող աչքի ընկնող գրական ստեղծագործություններից մեկն է։ Նա մեր միջնադարյան ողջ գրականության մեջ ունի իր ուրույն նշանակությունն ու տեղը։ Նրանում լավագույնս իրենց դրսևորումն են գտել բանիմաց հեղինակի ու նրա ժամանակաշրջանի տեսակետներն ու վերաբերմունքը մեսրոպյան հանճարեղ գյուտի նկատմամբ։ Նրան քաջ հայտնի էր այդ մշակութային ու քաղաքական ակտի պատմական նշանակությունը և դերը հայ ժողովրդի կյանքում, ուստի և վերոհիշյալ նկատառումներով էլ նրա վերաբերմունքն ու գնահատությունը այդ երևույթի հանդեպ որոշակի արժեք են ներկայացնում։

Հարկ է նշել, որ ներբողը գրելիս հեղինակը որոշակի օգտվել է գրերի գյուտի մասին տեղեկություններ հաղորդող մեր նախընթաց աղբյուրներից։ Ներբողի պատմականը քաղված է Կորյունից, Ղ. Փարպեցուց և, առավելապես, Մ. Խորենացուց։ Վերջինից որոշ դեպքերում նույնիսկ գրեթե բառացի մեջբերումներ են արված։ Այսպես օրինակ. «Տեսանէր, ասէ, ոչ ի բուն երազի

---

18 Նույն տեղում, թ. 299ա։

և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի գործարանի սրտին թաթ ձեռին, զի գրէր...»[19], և կամ մի այլ տեղ. «...ժողովել մանկունս փափկաձայնս, երկարոգիս և մտառուս, և հրամայէր դպրոցս կարգել ըստ գաւառաց...»[20]:

Նկատելի է միաժամանակ, որ Վ. Արևելցին ձեռքի տակ է ունեցել նաև Կ. Սասնեցու ներբողը՝ նվիրված Մեսրոպ Մաշտոցին: Վ. Արևելցու Տիեզերական Պատմության և «Ճղլանք»-ի մեջ գրերի գյուտի մասին եղած տեղեկությունների թվում կան նաև այնպիսիները, որոնք, ինչքան մեզ հայտնի է, առաջին անգամ պատահում են Կ. Սասնեցու մոտ, ինչպես օրինակ, գրերի գյուտը Բալուում կատարված լինելու և դանիելյան գրերի քանակի (22) մասին և այլն:

Ուսումնասիրվող ներբողի հեղինակը ճշմարտացիորեն վերարտադրելով ու գնահատելով Հայաստանի և հայ ժողովրդի գրերի գյուտին նախորդող տարիների գոյավիճակը քաղաքական, ինչպես և սոցիալ-տնտեսական առումով, դառնությամբ է ընդգծում, թե ինչքան մռայլ է եղել նա: Երկու իրարամերժ ուժերի միջև կոտորակված և «բազմադիմի հարկապահանջութեանց» շնորհիվ կողոպտված Հայոց լեռնաշխարհն ու բնակչությունը հեծում էին կատարյալ թշվառության մեջ: Նա նկատում է, որ ոչ մի ժողովուրդ չի արժանացել այդօրինակ զրկանքների, կեղեքման ու վշտերի. «...ընդ ծառայութեամբ անկար զանազան տերանց և բազմադիմի հարկապահանջութեանց, զի զրաւեցաք ընդ պարսից և ընդ յունաց տերութեանց և յերկուց միջի տատանէաք, որք կեղեքէին զկեանս մեր զանազան վշտօք: Վասն որոյ եղկելի գտաք քան զամենայն ազգս»[21]:

Սակայն հակառակ, որ իրողությունն այդպիսին էր, ծանր և զրկանքներով լի, Վ. Արևելցին շեշտում է հայ ժողովրդի լավատեսությունը, ցույց տալիս կեղեքումների, ծվատման և ձուլման ճանապարհով նրան պարտադրվող աստիճանական մահվան դեմ մարտնչելու նրա անսասան կամքն ու վճռականությունը: Նա ուրախությամբ է արձանագրում, թե ինչպես հայ ժողովրդի հետ ոգորում ու ոգևորվում էր առանձնապես Տարոնի հանճարեղ որդին՝ Մեսրոպ Մաշտոցը: Նա մի անգամ ևս ընդգծում է, որ նա հստակորեն ըմբռնել էր ժամանակը, նրա պահանջներն ու թելադրությունները, գիտակցել հայրենիքին սպառնացող ահավոր վտանգը: Եվ ահա նա, ծանր մտորումներից ու որոնումներից հետո, գալիս է վերջնական եզրակացության, ժամանակին զգալով հայոց գրերի ստեղծման կենսական անհրաժեշտությունը, որպեսզի դրանով հայ ժողովրդին մատուցվեր ամենահզոր զենքը՝ փրկվելու, ապրելու և ստեղծագործելու համար: Այս կապակցությամբ ներբողում ի միջի այլոց կարդում ենք հետևյալը. «Սուրբն Մեսրոպ... բազում ջանս յանձին կալեալ վասն գիւտի գրիս մերոյ, զի ազատեսցէ զազգս հայոց ի յունական լեզուածայր փառածաւալ ծննքենայից, մանաւանդ, զի յոլով լինէր վրիպումն շահից հոգևոր զանձուց վասն այլալեզու հեգենայիցն ի տառատպութիւն օտարասեռ սիզոբայից»[22]:

Վ. Արևելցին հայրենասիրական ծանր վիշտ է ապրում հատկապես հայոց պետականության բարձման, հայ ժողովրդի «առաջնորդների», «աղեղնավորների» և «սուսերավորների» անկման ու կործանման համար: Նկատառման ար-

---

19 Նույն տեղում, թ. 282ա, հմմտ. Մ. Խ ո ր ե ն ա ց ի, Պատմութիւն հայոց, Տփղիս, 1913, էջ 327:

20 Նույն տեղում, թ. 284բ, հմմտ. Մ. Խ ո ր ե ն ա ց ի, էջ 328:

21 Նույն տեղում, թ. 279բ:

22 Նույն տեղում, թ. 281ա:

ժանի է հեղինակի այս ցավն ու մտահոգությունը այն առումով, որ նրանք ամբողջությամբ արտահայտում են ոչ միայն իր, այլև իր ժամանակաշրջանի, ի մասնավորի Կիլիկիայի հայ իրականության հայրենասիրական միտումները։ Մեր կարծիքով անհավանական չէր լինի ենթադրել, որ Վ. Արևելցին սույն ներբողը գրել է Կիլիկիայում, իր այնտեղ եղած տարիներին (1241—1246 թթ.), երբ Կիլիկիայի հայոց թագավորությունը, արքունիքն ու մնացած ազդեցիկ շրջանները ձգտում էին կենդանություն տալ մեր անցյալի պատմության լուսավոր էջերին։ Անհրաժեշտ էր գգաստության և զարթոնքի կոչել հայ ժողովրդին, որը ստիպված էր քաղաքական ծանր իրադրության մեջ պայքարի դուրս գալ ոչ միայն զենքի ուժով։ Այդ միջոցին են դիմում հայ հասարակական և մտավոր շատ գործիչներ, որոնց թվում և ինքը՝ Վ. Արևելցին։

Ազգային արժանապատվության բարձր զգացումով լիցքավորված Վ. Արևելցին ամոթանք է տալիս որոշ դժգոհ տարրերի, որոնց կարծիքով հայերը իզուր էին սուրբ գրքը թարգմանել հայերեն. «Յամօթ լիցին այնոքիկ, որք ասէին, թէ ընդէ՞ր թարգմանեցին ի հայ բարբառ զգիրս սուրբս»[23]։ Բայց խիստ ուշագրավ է այս պարբերությունը ոչ միայն իր տրամադրությամբ ու ոգով։ Թեպետ սրա աղոտ նախանշույլը առկա է Կորյունի Վարքի մեջ[24], սակայն սույն ներբողում այն տված է ավելի որոշակիությամբ և համոզվածությամբ։

Տեղին է նշել, որ գրերի գյուտի փաստն արձանագրելիս Վ. Արևելցու տրամադրությունը բարձրանում է, հասնում մինչև իսկ պատանեկան ոգևորության. «Այժմ ի խնդութենէ ի վեր վազեմք, կայթեմք ձեռօք, կաքաւեմք ոտիւք, պարեմք ամենեքեան», քանի որ «փարատեցաւ նսեմութիւն խաւարի, տարածեցաւ լոյսն, ծաւալեցաւ ճառագայթն»[25]։ Վ. Արևելցին շատ լավ պատկերացնում էր հայ ժողովրդի այն օրերի ցնծության չափն ու սահմանը, որը և առիթ է հանդիսացել իր լավատեսությանն ու ոգևորությանը, որոնք զգացվում են ներբողի տարբեր հատվածներում։

Գրերի գյուտի առնչությամբ նա հանգում է նաև այլ ոգևորիչ հետևությունների։ Նա գտնում է, որ «Արդ երագեալ կաղութիւն լեզուիս մերոյ, որ ոչ կարէր զխաղտախուղտ ասացուածս բարբառել, կամ զյունարէն ծերածուն ծէթեէթելն։ Այժմ պարզեցին լեզուք ծանրախօսք և զօրացի տկարութիւն գիտութեան մերոյ»[26] և քանի որ ճշմարտությունն այս է, ապա նրա իսկ համոզմամբ պետք չէ անմասն մնալ հայոց նորաստեղծ գրերի նվիրական պարգևներից, մանավանդ որ «ոչ ոգիւ վաճառեալ, այլ ձրի պարգեւ»[27]։ Շարունակելով իր դատողությունները նա ընդգծում է, որ գրերի գյուտով իրերի դրությունը Հայաստանում, իրոք, շատ է փոխվում, «տգիտութեան խաւար»-ը մեզանից հեռանում է այնչափ, ինչքան արևելքն է հեռու արևմուտքից, այժմ այլևս ոչ ոք ստիպված չի լինի գնալ սրա կամ նրա մոտ՝ խնդրելու «թէ՛ ծանո ինձ զայս», այլ բոլորն անխտիր թե «վերինները» և թե «ստորինները» այսուհետև կճանաչեն իրերի դրվածքն ու կյանքի ճշմարտությունը[28]։

---

23 Նույն տեղում, 281ա։

24 Կ ո ր յ ո ւ ն, Վարք Մաշտոցի, Երևան, 1941, էջ 78։

25 Մատենադարան, ձեռ. № 8775, թ. 283բ։

26 Նույն տեղում, թ. 282բ—283ա։

27 Նույն տեղում, թ. 284ա։

28 Նույն տեղում, թ. 283բ։

Վ. Առնեյցին ավելի քան համոզված է, որ ժողովուրդների կյանքում գրին և գրչությանը շատ մեծ դեր է վերապահված ոչ միայն մշակույթի ասպարեզում, այլ և հասարակական և քաղաքական մարզերի մեջ, քանի որ նրանք օժտված են հասարակական ներգործուն ուժով: Ահա թե ինչ է գրում նա գրի մասին. «Մեծատանց ակն ոչ առնու և յիշխանաց ոչ երկընչիս..., ի հզօրաց ոչ զարհուրիս և տկարաց ոչ ողորմիս..., առ Էրեսս յանդիմանես և դէմ ընդ դէմ նախատես, յայտնապէս խայտառակես և ի հրապարակս պարսաւես..., հրապարակագոյժ զանասելիսն առնես և առաջի բազմաց ամաչեցուցանես...»[29]:

Նկատի ունենալով այս բոլորը, Վ. Առնեյցին ամենայն գոհունակությամբ արձանագրում է այն փաստը, որ մեր ժողովուրդը կարողացավ գնահատել գիրը, ըմբռնել նրա նշանակությունը և, մանավանդ, թեպետ զառն, բայց բախտորոշ մի ժամանակաշրջանում անմիջապես գործնականորեն ձեռնամուխ լինել նրա համատարած կիրառմանը:

Այնուհետև հեղինակը շարունակում է պատմել, թե ինչպես բազմաթիվ ու բազմապիսի դժվարություններ հաղթահարելուց հետո Սահակ Պարթևն ու Մեսրոպ Մաշտոցը անցնում են իրենց մանկավարժական, գրական և մշակութային գործունեությանը: Նա լրացնելով գրերի գյուտի վերաբերյալ հաղորդումներ պարունակող նախընթաց աղբյուրների տվյալները, հայտնում է, որ ուսուցման նպատակով հավաքագրված պատանիները ոչ միայն սովորեցին «զուսումնականն, զընթերցականն և զգերգողականն և զայլսն ամենայն, որք են Ժ թուով մասունք իմաստասիրութեան, բաժանեալք ի տեսականէն և ի գործնականէն»[30], այլ և «ոմանք և ի գծագրութիւնս տառից շահաւորեալ և ոմանք ի նիւթոցն պատրաստութիւն, բայց յիմաստութիւն ամենեքեան դեգերէին, հաւաքելով յինքեանս զհոյլս իմաստիցն, իբր զիմաստուն մեղու ժիր և գործունեայ՝ զանօսրագոյն և զշահաւէտ ծաղիկս հաւաքէին և գխոտանսն ի բաց ընկենուին»[31]:

Խոսելով առանձնապես նրանց մասին, որոնք մեկնել էին Ասորիք, Աղեքսանդրիա և Բյուզանդիոն իրենց ուսումը ավելի կատարելագործելու, հեղինակը գրվատում է նրանց բազմաթիվ դժվարություններ հաղթահարելը և անկոտրում կամքը: Նրանք «զմահ առաւել քան զկեանս ընտրէին»[32]: Սակայն կարևորն այստեղ այն է, ինչպես ընդգծում է հեղինակը, որ այդ բոլորը նրանց կողմից կատարվում էին խորը գիտակցությամբ, համբերատարությամբ և հետևողականությամբ: Նրանք վերադառնում են հայրենիք. «Ունելով ընդ ինքեանս բեռինս շահաւէտս և արդիւնարարս, մարգարիտս գեղեցիկս և ականս պատուականս՝ զրահխոհականն, զատենականն, զկացըրդականն և զաստուածաբանականն, զարդարելով զհայք իմաստութեամբ և վեհագունիցն յունաց պանծալիս ցուցանելով զգիտութիւնս մեր ազգաց բազմաց»[33]: Այդ նրանք էին, որ իբր «բանաւոր ծիծռունքն, ողջախոհ տատրակքն, ...մրափելոցն զարթուցիչքն, մոլորելոց զարցուցիչքն, խաւարելոց լուսաւորիչքն, ...ծերոց ննջուկքն, մանկանց դաստիարակքն, ...հասարակաց քաջալերիչքն, ազգիս երախտաւորքն»[34]

---

29 Նույն տեղում, թ. 298ա:
30 Նույն տեղում, թ. 286ա:
31 Նույն տեղում, թ. 286ա:
32 Նույն տեղում, թ. 285բ:
33 Նույն տեղում, թ. 287ա:
34 Նույն տեղում, թ. 292ա:

լույսով ու գիտությամբ ողողեցին Հայաստանը։ Գրական թարգմանչական իրենց գործունեության ընթացքում նրանք անչափ հարստացրին հայ դրականության գանձարանը «ճառիւք ներբողենեօք, պատմութեամբք հոգևորօք, իմաստիւք զարմանալեօք, մեկնողութեամբք տառից, թարգմանութեամբք, տառապութեանց յօրինմամբք»[35], իսկ դպրոցներում ծավալած նրանց մանկավարժական աշխատանքների վերաբերյալ հետևյալն է գրում. «Ուսուցանէին, կրթէին, վարժէին, պայծառացուցանէին... Եւ այսպիսի հանդիսիւք կացեալք՝ փայլեցան, պայծառացան»[36]։ Իրենց այսպիսի հայրենանվեր գործունեությամբ էլ նրանք հորդառատ լույս էին բացված մեր երկրի ժամանակակից խավարամած մթության վրա, մեր կյանքի «աղ»-ն էին ու «փառք»-ը, «վասնորոյ աղ եղեն երկրի և լոյս աշխարհի և փառք ազգիս մերոյ»,—գոհունակությամբ եզրակացնում է նա[37]։

Հասկանալի է, որ այս բոլորը ոչ-պատահականորեն են տեղ գտել ներբողում։ Հեղինակը միտումնավոր կերպով դիմել է չափազանցությունների, ներբողի անձնավորություններին ավելի վեհ, պատկառելի ու ցայտուն դարձնելու և նրանց գործի արժեքը բարձրացնելու համար։ Ներբողի հեղինակը խորունկ վշտով է արձանագրում այն ցավալի փոփոխությունները, որ տեղի էին ունեցել Հայաստանում մինչև նրանց վերադարձը։ Հայաստանն ընկել էր ավելի անփառունակ վիճակի մեջ, զրկվել էր ինքնուրույն պետական իշխանությունից, իրենց իմաստուն «առաքիչները»՝ Սահակ Պարթևն ու Մեսրոպ Մաշտոցը մահացել էին, «ուսումնասիրութիւն»-ը նվազել։ Այս տխուր կացությունը ցնցող տպավորություն է թողնում նրանց վրա, ճմլում բոլորի սրտերը, և նրանք «ձեռն ի ծնօտի հարեալ և ափս երեսաց եդեալ ողբային»[38] երկրի վիճակը։

Այսօրինակ խորհրդածություններից հետո Վ. Արևելցին վերստին անդրադառնում է թարգմանիչների գործունեությանը, շեշտում նրանց կարևոր դերն ու նշանակությունը հայ ժողովրդի կյանքում և մշակույթի պատմության մեջ։ Պատահականություն չէ երբեք, որ նա այդքան լայն տեղ է տվել թարգմանիչներին իբրև գրերի գյուտը կիրառման դնող և գործնական արդյունքի բերող մեծաջան մշակների։

Այնուհետև, կրկին անդրադառնալով Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի կյանքին և գործունեությանը, նա խոսում է վրաց և աղվանից գրերի հորինման մասին, ապա հասցնում շարադրանքը մինչև նրանց կյանքի վախճանը։ Չափազանց ջերմ են նրա խոսքերն ու վերաբերմունքը նրանց նկատմամբ.

Սորա պարծանք տանս Թորգոմայ,
Սորա ծաղիկք աշխարհիս Արամեան,
Սորա բողբոջք հայկական ազինս...
Պարիսպք պահպանութեան։
Սորա տունկք անմահութեան
Արմատացեալք ի գնացս ջուրց,
Տալով միշտ ի դէպ ժամանակի
Զիմանալի պտուղն հոգեկեցոյց,

---

35 Նույն տեղում, թ. 293բ։
36 Նույն տեղում, թ. 294ա։
37 Նույն տեղում։
38 Նույն տեղում, թ. 287բ։

*Որոց կերակուր մնայ ի կեանս յավիտենից...*
*Սոքա գտօղք գրոյ տոհմիս մերոյ*
*Ալփաբետաց և սղաբայից...*[39]:

Այս հատվածի առավել կարևոր նշանակությունը կայանում է նաև նրանում, որ Վ. Արևելցին միջնադարի մութ պայմաններում արդեն շատ հստակ նկատել էր գրերի գյուտի, Սահակ Պարթևի, Մեսրոպ Մաշտոցի և թարգմանիչների գործունեության հայ ժողովրդի ազգապահպանման գործում ունեցած հսկա դերը: Այս համոզմունքն է առավելապես նրան թելադրել հորջորջելու նրանց ոչ միայն «ծաղիկք աշխարհիս Արամեան», այլ մանավանդ՝ «պարիսպք պահպանութեան»:

Մինչև այստեղ մենք փորձեցինք համառոտակի վեր հանել Վ. Արևելցու ներբողի բովանդակությունը և գաղափարական արժանիքները, սակայն, ինչպես կարելի է արդեն կռահել ասվածից, այն ըստ ձևի ճշմարիտ գեղարվեստական երկասիրություն է և, իբրև այդպիսին, անհրաժեշտ ենք համարում մի քանի խոսք ասել նրա նաև գեղարվեստական առանձնահատկությունների մասին:

Վ. Արևելցու թողած հարուստ և բազմաժանր գրական ժառանգության մեջ կան մի քանի ներբողներ, որոնք թեև օժտված են գեղարվեստական այս կամ այն արժանիքով, սակայն ամբողջապես նրանցից և ոչ մեկը չունի սույն ներբողի բանաստեղծական շունչն ու ոգին:

Ներբողը գրված է հուզումով, ջերմությամբ և հետզհետե աճող եռանդով ու կրքով: Հեղինակի հնարավորությունները շատ լայն են իր երկը խորապես հուզաթաթավ դարձնելու համար: Գրեթե յուրաքանչյուր բառի ներքո կարծես գրված է հենց իր սիրտը, որը բառերի տակից անմիջականորեն խոսում է ընթերցողների հետ՝ հաղորդելով նրանց իր հույզերն ու ջերմությունը: Նա բաժանում է ներբողում հիշատակված անձնավորությունների բոլոր ապրումները, ուրախություններն ու վշտերը: Նա սոսկ փաստական արձանագրություններ գրանցող հեղինակ չէ: Նա ոչ միայն մտավոր կերպով հետևում է իր նկարագրած դեպքերի, իրադարձությունների վիճակին ու զարգացմանը, այլ, համաձայն նրանցից բխող եզրակացությունների, մերթ հուզվում, ողբում, մերթ ալեկոծվում, ընկնում տագնապի մեջ և մերթ հրճվում ու փառավորվում է: Կարծես նա անձամբ ականատես ու մասնակից է եղել բոլոր անցուդարձերին, որոնց ինքը տեղ է տվել իր ներբողում: Այս զգալի է առանձնապես այն հատվածների և տողերի մեջ, որտեղ այդ նույն սիրտը առավել խորը կերպով ապրում ու շնչում է հայրենիքի երբեմնի լուսավոր անցյալով և ավայտում ու ողբում է նրա մռայլ օրերի հիշատակների, թշվառ ու խավարամած կյանքի համար: Սրանում էլ կայանում է ներբողի վարակիչ հատկությունը:

«Զարհուրս բնակչաց քոց, որպէս զջուր հեղին յերկրի և դիակունք անթաղ մնացին»: «Եղեաք նախատինս դրացեաց մերոց և այպն կատականաց թշնամեաց: Ո՞հ զաղութեանս..., վա՜յ վրշտիս... ո՞ւր են առաջնորդքն մեր բարեփառք, թագաւորքն մեր յաղթողք, իշխանքն մեր [հ]սկայազունք, ժողովուրդքն մեր խրախացեալք, յորժամ ցնծայր երկիրս Հայոց, յորժամ զուարճանայր ազգս արամեան, յորժամ բերկրէր ի բարեկրութեան, յորժամ խնդայր ի խրախութեան, յորժամ երանէր յամենայն ազգաց. վա՜յ ինձ, վա՜յ...»[40],—ափսո-

---

[39] Նույն տեղում, թ. 296բ—297ա:

[40] Նույն տեղում, թ. 290բ:

սանքով հառաչում է ներբողի հեղինակը: Եվ ո՞վ կկարողանա արժանավորապես երգել Հայոց երկրի անհուն վիշտը, ո՞ր ողբերգակը ի վիճակի կլինի արժանի ողբ ասել հայ ժողովրդի տառապանքների մասին, ո՞ւր են Հայոց Երեմիան ու Դավիթը, հարցնում է նա: Նկատելով, որ սիրելի Հայաստանում «զուր և որոգայթ զմիմեանս փոխանակեն, յորոց ոչ գոյ փախուստ»[41], իր ուղղակի խոսքն ուղղելով նրան, սրտի դառն կսկիծով բացականչում է. «...Աւա՜ղ քեզ երկիր Հայոց, գաւառ գեղեցիկ, աշխարհ արևելեան, հուպ առ եդեմ, ծանի՛ր զյաւութիւնս քո...», ապա դառնալով հայ ժողովրդին ասում է. «Աւա՜ղ բնակիչք բարեբաստիկք, ազգ ընտիր, ժողովուրդ սեպհական..., աղեղնաւորք քո անկան, և սուսերաւորք քո կործանեցան»[42]: Ներբողի մեջ առանձնապես հուզիչ է այս հատվածը, որը գրված է բուռն խանդով, ափսոսանքով ու վշտով, պատկերավոր և հարուստ ոճով: Այն անմիջապես հիշեցնում է Մ. Խորենացու հռչակավոր ողբը, որը անպայման նա ձեռքի տակ ունեցել է:

Հեղինակի բանաստեղծական զեղումները և՛ տրտմության, և՛ ցնծության ժամերին հաճախ են զգացնել տալիս իրենց ներկայությունը: Ընթերցողը այս իրողությունը կարող է նկատել առանձնապես որոշ հատվածներում, որտեղ հեղինակի խոսքն ուղղակի փոխվում է չափածո բանաստեղծության: Տարվելով իր զգացումները փոխարկող որոշակի ռիթմներով և չանձնելով իր հույզերը, նա կարծես կտրվում է աշխարհից, իրականությունից և ինքնամոռաց խանդավառությամբ վազում իր սիրելի հերոսների հետքերով, հայ ժողովրդի պատմության տարբեր արահետներով: Այս փաստը գիտակցել է նաև ինքն ու գրել. «Այլ ես անգիտացայ զչափ անձին իմոյ, ի վեր քան զարժանն իմ յանդգնեցայ, վասն որոյ չմեղադրանս յամենեցունց պահանջեմ. զի սէր գերայաղթ ամենայնի յանգիպի և ինքն պարտեալ յումեքէ ոչ գտանի, զոր տիրապէս և ես կրեցի՝ յաղթեալ ի սիրոյ»[43]: Այս երևույթն էլ, դժբախտաբար, պատճառ է դարձել, որ նախ՝ ներբողի խոհական կողմը ավելի քիչ տեղ բռնի, քիչ լինեն խորհրդածություններն ու հաշվեկշիռը շոշափվող հարցերը քննելիս ու գնահատելիս և, ապա, զգալի չափով տեղի ունենա բառերի կուտակում և ձգձըգվածություն: Գնահատականները տրված են ընդհանրապես հույզերի տարափի տակ, թեպետ ոչ սխալ և անտեղի:

Վ. Արևելցին մի շարք հուզող պատկերներ է ստեղծել իր ստեղծագործության համար: Նրանցից շատերն իրենց վրա կրում են ժողովրդական պատումների և ավանդության դրոշմ: Պատկերներից շատերն առնչվում են մարդկանց նիստուկացի, առօրյայի հետ, որով և զգալի չափով աշխուժանում է ներբողի պատմելաձևը և ավելի սրտի մոտիկ ու անմիջական են դառնում պատմվող դեպքերը:

Ահա նրանցից մեկը. «Բայց աւա՜ղ յայսմ վայրի, զի բանս այլ ոչ ես ախորժէ յառաջել, քանզի յորժամ հունձքն բազում էին, և մըշակքն սակաւ, և արտորայքն սպիտակացեալ և ի հունձս հասեալ, և աղաչեցեալ եղե տէր հընձոցն և ելին մըշակքն ի հունձս: Եւ արդ՝ մանկաղք թերեալք և մըշակք պատրաստեալք և եկեալքն ի հունձս հոգևորս չիք ի միջի, այլ ծըղօտ միայն և խոզան և սուղ ինչ նըշմարանք արտորէից երևէին»[44]:

41 Նույն տեղում, թ. 289ա:
42 Նույն տեղում, թ. 289բ:
43 Նույն տեղում, թ. 294բ:
44 Նույն տեղում, թ. 287բ:

Նույն հատվածում, Հայաստանի դաժն վիճակի վրա ողբացող թարգմանիչների մասին խոսելիս, նա ուղղակիորեն դիմում է ժողովրդական պատումների պատկերավորությանը, պատմելաձևին ու ոճին. «Վասն որոյ ողբս առեալ հառաչէին երանալիքն, լային և արտասուէին, ձեռն ի ծնօտի հարեալ և ախ երեսաց եղեալ ողբալին։ Երբեմն ի վերայ ծնկաց կացեալ՝ վարանէին, չիւաբէին, տարակուսէին, գլխոյս շարժէին, ղաչս ողորմ ածէին, գծնօտս ապտակէին, զբարձն ծեծէին, ողբերգական բանս խօսէին, յեղանակաւ բացագանչէին, զանչոյնչ տարերս ի յողբս շարժէին, էհա՜, էհա՜ ասելով աւաղական բանս յաճախէին»[45]։

Ներբողի մեջ քիչ չեն նաև համեմատությունները, որոնք երբեմն աչքի են ընկնում իրենց բազմազանությամբ, գունագեղությամբ և նպատակայնությամբ։ Նրանք հաջողությամբ վեր են հանում հեղինակի հույզերը, խոհերն ու ցանկությունները կապված իրական աշխարհի հետ, ներկայացնում են առօրյա կյանքը հաճախ առանց որևէ մթին այլաբանության։ Նրանք համեմում են ներբողը, օժանդակում գործող անձանց նկարագրի և հոգեբանության դրսևորմանը, քաղաքական ու մշակութային պայմանների և երևույթների առավել դիպուկ ու ճշգրիտ բնութագրմանը։

Կարծում ենք, որ այսքանով ավարտված չենք կարող համարել Վ. Արևելցու սույն ներբողի գեղարվեստական առանձնահատկությունների բնութագրումը, այլ սա միայն մի փոքր փորձ է այդ ուղղությամբ։

Ներբողի ոճական և լեզվական հատկանիշները նույնպես արժանի են ուշադրության ու պատշաճ գնահատականի։ Նրա ոճը պատկերավոր է, գունեղ և սահուն, թեպետև երբեմն վերամբարձ ու ձգձգված։ Լեզուն ճոխ է, զգացվում է, որ հեղինակի հնարավորությունները շատ են այս ուղղությամբ։ Բառապաշարը հարուստ է, յուրաքանչյուր բառի երանգավորումը՝ գիտակցված։ Նկատվում են երբեմն նաև ժողովրդական լեզվամտածողության որոշ հետքեր։

Ներբողն ամբողջությամբ տոգորված է բանաստեղծական ջերմ շնչով, հայրենասիրական ներհուն թախիծով, բուռն հույզերով ու լավատեսությամբ։ Այն ուշագրավ երևույթ է ոչ միայն Վ. Արևելցու հարուստ մատենագրության, այլև հայ միջնադարյան ողջ գրականության մեջ։

Ստորև հրատարակության ենք ներկայացնում Վ. Արևելցու Ներբողի բնագիրը այնպես, ինչպես այն առկա է Մատենադարանի № 8775 ձեռագրում։ Տողատակում տրված են 1853 թ. Սոփերքի Բ հատորում հրատարակված տարբերակի կարևոր տարընթերցվածները, որոնց մի մասը, գուցե, ավելի ճիշտ կլիներ տեղադրել հրատարակվող բնագրի մեջ, սակայն այդ չենք արել, նախ՝ որովհետև համեմատությունը կատարվել է միայն մեկ տարբերակի հետ և ապա, կարծում ենք, որ այդպիսով ընթերցողին ավելի լայն հնարավորություն ենք տալիս անձամբ ճիշտ ընտրություն կատարելու և կողմնորոշվելու։

---

45 Նույն տեղում, թ. 287բ։

# ՆՈՐԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՍԱՑԵԱԼ ԲԱՆ ԳՈՎԵՍՏԻ ՊԱՏՄԱԳՐԱԲԱՐ ՎԱՍՆ ՍՐԲՈՅՆ ՍԱՀԱԿԱՅ ԵՒ ՄԵՍՐՈՊԱՅ ԵՒ ԱՅԼՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑՆ[1]

*Արդ, ի Նստել սրբոյն Սահակայ Պարթեւի յաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, և զի էր[2] սուրբն Իսահակ որդի մեծին Ներսեսի՝ որդւոյ Աթանագինէի՝ որդւոյ սրբոյն Յուսկայ՝ որդւոյն Վրթանայ՝ որդւոյ սրբոյն Գրիգորի[3]: Եւ այսպէս, սուրբն Իսահակ[4] գոլով ծնունդ առաքինութեան, յիրաւի ապա ի նմանէ ծաղկեցաւ հանդէսք առաքինութեան արդար վաստակոց[5], որ յաշխարհի գոլով իբրեւ զանապատաւորս ամենայն հեշտանաց հանդիսիւ ընդ կարգս աշխարհիս անցանէր մըշտընջենաւորունչ ազօթիւք, հանդերձ իւրովքն աշակերտօք[6] կատարէր[7] զպաշտօն բարեկարգութեան, պինդ ունելով միշտ[8] զգեակս եկեղեցւոյ՝ կարգաւորէր հանապազ[9] պայծառապէս զկանոնական սահմանադրութիւնսն ըստ օրինի սրբոց հարցն[10]||օրինակ բարեաց միշտ[11] զանձն տալով ամենեցուն ոչ միայն ուսուցանել բանիւ, այլ և գործով կատարել[12] զասացեալսն ըստ աճարմնեան կարգին գերազարդ[13] փառօք երեւեալ միշտ ի գլուխ[14] ժողովրդեան իւրոյ, մանաւանդ առաւել ևս բարձրացեալ ճոխութեամբ շնորհաց, զի ոչ ստուերականին գոլով քահանայագործաւղ դասակարգութեան, այլ ճշմարտութեան յաւէտ տեսուչ[15] առաջնորդութեամբ վերակացութեան[16]:*

*Եւ վասն զի ըստ զանազան յանցուածոց մերոց և խառնակ ընթացից ընդ ծառայութեամբ անկաք զանազան տէրանց և բազմադիմի հարկապահանջութեանց, զի զրուեցաք ընդ պարսից և ընդ յունաց տէրութեանց և յերկուց միջի տատանէաք, որք կեղեքէին զկեանս մեր զանազան վըշտօք, վասն որոյ եղկելի գտաք քան զամենայն ազգս, վասն զի որ հաւան էին՝ այլանդակ գոլով և թշնամիք ճշմարտութեան, ընդ որոց ոչ լինէր|| սիրոյ միաբանութիւն, իսկ որք մերձաւորք և ընդանիք էին հաւատոյ[17] հնագոյն գոլով ոչ ժամանէին ի թիկունս օգնականութեան[18] ըստ ար-*

279բ

280ա

---

1 Պատմութիւն վասն սրբոյն Սահակայ հայրապետին եւ Մեսրովբայ վարդապետին. փխ Նորին Վարդանայ... թարգմանչացն:

2 Յետ ամաց հնգից վախճանի հայրապետն մեծ Ասպուրակէս և յաջորդէ զաթոռ պատրիարքութեանն փխ Արդ, ի Նստել... և զի էր:

3 չիք որդի... Գրիգորի:

4 և վասնզի սոյնպէս սա փխ Եւ... Իսահակ:

5 զհետ սորա ընթանայր սուրբ և արդար վաստակոց հանդէսք փխ ի նմանէ... վաստակոց:

6 աշակերտելոք:

7 կատարեալ:

8 չիք միշտ:

9 կարգաւորելով միշտ:

10 ըստ օրինի զսահմանադրութիւնս բուն կանոնական հրամանի փխ զկանոնական... հարցն:

11 չիք միշտ:

12 կատարեալ

13 գեղեցկազարդ:

14 միշտ ի գլուխ:

15 զօրավիգն:

16 վերադիտողութեան:

17 Իսկ որք զաւանակիցքն էին փխ իսկ որք... հաւատոյ:

18 չիք օգնականութեան:

ժանուցն, վասն որոյ գլոլով ծառայութիւն պարսից լինէր ծառայել աշխարհն Հայոց։ Եւ յայսմ վայրի լինէր հարկ ի խընդրոյ իւրք գնալ սրբոյն Սահակայ առ Վռամ[19] պարսից արքայ։ Եւ մեծարեալ ի նմանէ վեհագոյն[20] պատուով ի Թագաւորէն և ի մեծամեծաց նորա[21], վասն զի յարգոյ և պատուական ցուցանէ աստուած զսուրբս[22] իւր առաջի անհաւատից, վասն որոյ աչալուրջ էրեսօք զբոլորն նորա կատարէր զհայցուածսն։ Իսկ իբրև եկն սուրբն Սահակ ի տեղի իւր[23] և զպարգևեալսն ի մեծէն Վռամայ[24] հաստատեաց ի ձեռն մերոյն Վռամշապհոյ, որ էր հայ ազգաւ և դաւանութեամբ քրիստոսական հաւատովս կարգեալ ի պարսից արքայէն ի տեղի Թագաւորացս Հայոց։ Յորժամ արտաքսեաց զԱրտաշիր Թագա- 280բ ւորն||կամօք ազատացն Հայոց, յոր ստիպէին զսուրբն Իսահակ ի չարախօսել զԹագաւորն, և նա ոչ էառ յանձն մասն լինել Թագաւորին իւրոյ, այլ ասէր, թէ ես զհիւանդ ոչխարն իմ առողջ գայլոյ ոչ մատնեմ, զի թեպէտ և մեղաւոր է, այլ ոչ անհաւատ շնացող է, այլ հաւատացեալ է ի Քրիստոս, պոռնիկ է, այլ ծնունդ է սուրբ աւազանին, զեղխ է, այլ ի կանայս և ոչ յարուս, խղամոլ է և ոչ արւագէտ, հիւանդ է հոգով և ոչ մեռեալ մարմնով, վասնորոյ պարտ է դարմանել զնա և կաղանդել, զեղել և ազապատել, զի թերևս առողջասցի և գայցէ յուղղութիւն, վասն որոյ կոչեցեալ եղև հարկիւ ի յարքայէն սուրբն Իսահակ, զի չարախօսեսցէ զիւր Թագաւորէն ընդ աւագացն Հայոց. և նա ոչ չարաբանեաց։ Իբրև դարձաւ ի պարսից[25], սկսաւ դարձեալ սուրբն Իսահակ[26] ի նոյն հոգս եկեղեցւոյ տքնել քաջութեամբ յարդարելով բարեպաշտապէս զկանոնական կարգադրութիւնս զցայգ և ցէրեկ[27]։

281ա Ընդ այն ժամանակս և մեծ վարդապետն Մեսրոպ[28], որ էր||աշակերտ և սարկաւագ մեծ հայրապետին սրբոյն Ներսեսի՝ հօրն ըստ մարմնոյ և հոգոյ սրբոյն Սահակայ Պարթևի, որոյ և սուրբն Մեսրոպ ընկերեալ և[29] բազում ջանս յանձին կալեալ վասն գիւտի գրիս մերոյ, զի ազատեսցէ զազգս Հայոց ի յունական լեզուածայր փառածաւալ[30] ծննբենայիցն, մանաւանդ զի յոլով լինէր վրիպումն շահից հոգևոր գանձուց վասն այլալեզու հեգենայիցն ի տառադարձութիւն օտարասեռ սիղորայից, վասն զի ուր ոչ լինէր մերձ սուրբն Սահակ կամ մեծն Մեսրոպ, ոչ կարէին իմանալ զվերծանութիւն գրոց և[31] զրկեալ լինէին ի լուսաւոր պատուիրանացն աստուծոյ, ունայն լինէր ունկնդրութիւն լսողացն և զուր աշխատութիւն ընթերցողացն[32]։

---

19 Արտաշիր։
20 եւ մեծարի առ ի նմանէն յաւէտ վեհագոյն։
21 չիք ի Թագաւորէն և ի մեծամեծաց նորա։
22 զծառայս։
23 չիք ի տեղի իւր։
24 յԱրտաշրէ փխ ի մեծէն Վռամայ։
25 չիք որ էր հայ ազգաւ... ի Պարսից։
26 չիք սուրբն Իսահակ։
27 չիք զցայգ և ցէրեկ։
28 ընդ այն ժամանակս ապա և մեծն Մեսրովբ փխ ընդ այն... Մեսրոպ։
29 չիք որ էր աշակերտ... ընկերեալ և։
30 փառածաղկի ծէնբենայիցն։
31 գրոց և։
32 ունայն ունկնդրութեամբ և զուր աշխատութեամբ փխ ունայն... ընթերցողացն։

Յամօթ լիցին այնոքիկ, որք ասէին, թէ ընդէ՞ր թարգմանեցին ի Հայ բարբառ զգիրս սուրբս, թող կացեալ մնացեալ էաք ի նոյնն, և
281բ զի՞նչ շահ ազատի լինէր ի վերծանութենէ աստուածային տառից, յոր||ժամ ոչ որ իմանայր[33]։ Եւ վասն այսպիսի աղէտից[34] երանելին Մեսրոպ մեծազօրն Հոգւ զանձամբն արկեալ ոչ դադարէր յամենայն տեղիս ընթանալ շըրջագայութեամբ, թերևս կարասցէ գտանել նշս իրացն[35] և ոչ գտանէր։ Էջ յԱսորիս առ Դանիէլ ոմն գրամարտիկոս և գտանայր դեգերեալ, գնաց յՈւռհայ[36] առ ճարտասանն Եպիփան և ոչ լընոյր փափագ բղձիցն, այլ ի նոյն տարակոյս մնայր։ Եւ այս վերնական խնամոցն տնօրէնութիւն, զի նշք իրացն լիցի յաստուծոյ[37] և ոչ ի մարդկանէ, որպէս հնոյն Իսրայէղի յաստուծոյ պարգևեալ գիր ասպինացն ի ձեռն Մովսեսի։ Եւ այս մեծազօրն շնորհ ընձեռեալ ազգիս մերոյ յաստուծոյ։ Վասն որոյ սուրբն Իսահակ և մեծն Մեսրոպ յետ բազում ունայնաջան և զբրավաստակ լինելոյ յաղօթս ապաւինէին յաստուծոյ՝ խնդրելով զնշս իրացն։ Եւ ըստ պատմութեան, որպէս ցուցանէ գիր, աւուր խնդրելին, զի զկամս
282ա երկիւղածաց իւրոց առնէ տէր, և որ խըն||դրէ՝ հաւատով առնու, և որ հայցէ՝ գտանէ ըստ տէրունական հրամանին։ Եւ զի բարի է աստուած ընտրելոց իւրոց և ոյք ունին սիրտ սուրբ առաջի նորա[38]։ Տեսանէր, ասէ[39], ոչ ի քուն երազի և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի գործարանն սրտին թաթ ձեռին, զի գրէր, որով տուեալ եղև մեզ դըպրութիւն աստուածային գրոց։ Եւ արդ, եթէ մարգարէն տիրազօրն ասէ զգրեալս ի տախտակ սրտի մարմնեղէնս, քան ի տախտակս քարեղէնս, ապա յայտ է, թէ ոչ է նուաղ մերոյս գրոյ արուչութիւն, քան զհինն զտուեալն[40] ի ձեռն նախամարգարէին Մովսեսի։

Եւ ապա եկեալ առ սուրբն Իսահակ երանելին Մեսրոպ բերելով ընդ ինքեան զպարգևս աստուածայինս՝ այսինքն զգիր մերոյ լեզուիս, զոր ընկալեալ ի շնորհացն աստուծոյ, ընդ որս յաւէտ ուրախացեալ բերկրալից ցընծութեամբ սուրբ հայրապետն Իսահակ[41] մեծ գոհութիւն ամենազօրին[42] աստուծոյ մատուցանէր, որ ոչ անտես առնէ զաղաչանս ծառա-
282բ յից իւրոց, զի[43] աստուած փառաւորեալ է||ի խորհուրդս սրբոց իւրոց և զփառաւորիչս իւր փառաւորէ։ Արդարև, ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ տէր, այլ զօրացոյց զողորմութիւն իւր ի վերայ երկիւղածաց իւրոց՝ հեռի առնելով ի մէնջ զխաւար տգիտութեան[44]։ Եւ մեծ արար տէր

33 չիք Յամօթ լիցին... ոչ որ իմանայր։

34 վասն որոյ փխ և վասն այսպիսի աղէտից։

35 հնար նշի իրին։

36 ընթանայր յեդեսա։

37 առ Եպիփան ոմն ճարտասան ճոխացեալ, և ոչինչ օգտեալ այլ ի նոյն տարակոյս մնացեալ զի նշս իրացն լինելի յաստուծոյ փխ առ ճարտասանն... յաստուծոյ։

38 չիք Եւ ըստ պատմութեան... առաջի նորա։

39 Եւ երանելին Մեսրոպայ ունելով ընդ ինքեան աշակերտեալս անձինս քառասուն խարազնազգեստս և բոկոտնս, արթնելով մինչ աղօթիւք ի լերինս և ի փապարս խնդրելով յԱստուծոյ վասն իրացս այսոցիկ։ Եւ տեսանէր սուրբ և երջանիկ վարդապետն Մեսրոպայ փխ Տեսանէր, ասէ։

40 զհին օրէնսն զտուեալսն փխ զհինն զտուեալն։

41 չիք սուրբ հայրապետն Իսահակ։

42 ամենազօրն։

43 այլ ճշմարտութեամբ զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր, աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա, զի։

44 տգիտութեան մեր։

զառնելն իւր ընդ մեզ ըստ խրում առատ մարդասիրութեան՝ գթալով ի առեղծուածս ձեռաց իւրոց, վասն որոյ եկայք ցնծասցուք ի տէր* և աւրհնեսցուք զբարերար փրկիչն մեր, կանխեսցուք առաջի նորա խոստովանութեամբ և գոհացարուք զառատ ողորմութենէ նորա, տուք փառս աստուծոյ, տուք աւրհնութիւն տեառն աստուծոյ մերոյ ժողովուրդք հաւատացելոց և պաշտօնեայք պանծալի մօր մեր Սիոնի, մեծացուսցուք զբարերարութիւն աստուծոյ և բարձր արասցուք զանուն նորա, ի միասին գոհացարուք զամենագութ տեառնէն[45] մերմէ, զի քաղցր է և յաւիտեան է ողորմ[ութիւն] նորա։ Արդ[46] երագեսցէ կաղութիւն լեզուս մերոյ, որ ոչ
283ա կարէր զխաղաղախուզա||առրուցն բարբառել կամ զյունարէն ծերածուան ծէթնէթնլն։ Այժմ պարզեսցին լեզուք ծանրախօսք, և զօրասցի տկարութիւն զիտութեան[47] մերոյ ի փառս և ի գովութիւն աստուծոյ մերոյ՝ զըթածին և մարդասիրին[48]։ Այժմ ոչ լիցի ընթերցեալ և ոչ իմացեալ կամ խօսեցեալ և ոչ լըեալ, զի որչափ հեռի են Արևելք յԱրևմտից, այնչափ հեռի արար ի մէնջ տէր զխաւար տգիտութեան մերոյ[49]։ Այժմ ոչ լիցի առել խուժ և լսել դուժ, այժմ ոչ լիցի միոյն ընթեռնուլ և միւսոյն մեկնել[50], այլ և ամէնն վերաձայնեսցի ի ժողովրդենէն ի փառաւորութիւն պաշտօնէից։ Այժմ ունկնդրութիւն լիցի վերծանողացն, և ծանիցէ բազմիկն զծանրութիւն պատուիրանաց տեառն[51], և մեծատունք զմեծութիւն շնորհի նորա[52], եւ գեղջուկքն գովեսցեն զքանշելարարն տէր, և առհասարակ աւրհնեսցեն զանուն նորա[53]։ Այժմ ոչ կարօտասցի ոք թարգմանութեան, և ոչ ընթասցի ոք առ ոք թէ՝ ծանո[54] ինձ զայս,||այլ միաբե-
283բ րեալ միաբանութեամբ վերինք[55] և ներքինք, ներսինք[56] և արտաքինք, վեհք և բազմիկք[57], հեռաւորք և մերձակայք, մեծամեծք և փոքունք[58] ամենեքեան ծանիցեն զճշմարտութիւն և իմասցին զարդարութիւն, յաւժարեսցին ի լաւութիւն և գործեսցեն զբարութիւն, աւրհնեսցեն զարարիչն և գովեսցեն զնախախնամիչն, բարեբանեսցեն զպարգևատուն և փառս տացեն աւրհնելոյն[59]։ Լուծաւ կապ բերանոյ, փարատեցաւ նրսեմութիւն խաւարի, տարածեցաւ լոյսն, ծաւալեցաւ ճառագայթն[60]։ Սիւն ամպոյ առաջնորդէ[61], սեին հոգւոր զիացուցանէ ողջնչութիւն կերակրոյն ի սառ-

* Թեև ձեռագրում սույն բառերը գրված են այլ դասավորությամբ, սակայն գրչի իսկ կողմից ա և բ տառանիշերով մատնանշված է սույն դասավորությունը։

45 և գոհացարուք զբարերար տեառնէ։

46 այժմ աչք կուրաց բացցին և ականջք խլից լսիցեն, այժմ փխ արդ։

47 տգիտութեան։

48 մարդասիրին աստուծոյ փխ աստուծոյ... մարդասիրին։

49 չիՐ Այժմ ոչ լիցի... տգիտութեան մերոյ։

50 չիՐ այժմ ոչ լիցի... մեկնել։

51 պատուիրանացն աստուծոյ։

52 չիՐ և մեծատունք զմեծութիւն շնորհի նորա։

53 չիՐ և առհասարակ... նորա։

54 ընթերցիր։

55 չիք վերինք։

56 չիՐ ներսինք։

57 չիՐ վեհք և բազմիկք։

58 ի փոքունց մինչև ցմեծամեծս փխ մեծամեծք և փոքունք։

59 փառաբանեսցեն զպարգևատուն փխ յաւժարեսցին..., տացեն աւրհնելոյն։

60 չիՐ փարատեցաւ... ճառագայթն։

61 լուսաւորէ։

դութիւն: Փոխեցաւ և դառնութիւն ջուրց ի քաղցրութիւն: Այժմ բերկրեցաք արտիւ, ցնծացաք հոգով, զուարճացաք մտօք, զուարթացար էրեսօք: Այժմ ի խնդութենէ ի վեր վաղեմք, կայթեմք ձեռօք, կաքաւեմք ոտիւք,
284ա պարեմք ամենեքեան: Տանեցէք ամենեքեան, հրնչ||եցէք միաբան, տուք փառս ի մի բերան[62]: Սեղան հոգևոր պատրաստական է, բաժակն իմաստութեան մատրուակի[63]: Փութացարուք հաւատացեալ ժողովուրդք աստուծոյ[64], եկայք ճաշակեցէք, եկայք զմայլեցարուք, եկայք արբեցարուք հոգևոր արբեցութիւն զհոգոյն փրչումն, զփրրկչական առաքումն, զաստուածական շնորհքն, զիմանալի անձրևն[65]: Ոչ որդիւ վաճառեալ, այլ ձրրի պարգևի, ոչ տարակուսիւ խնդրեսցի, այլ դիւրալուր իմանի: Առէք լիացարուք, առէք արբեցարուք[66], առէք բերկրեցարուք, ճաշակեցէք և տեսէք, զի քաղցր է տէր: Կերակրողին փառս վերառաքեցէք, զի անբաւ է մարդասիրութիւն նորա: Վաշ քեզ Յիսուս, արքէն քեզ, արքայ երկնաւոր, պատիւ քեզ, բարձրեալ, փառք քեզ, թագաւոր փառաց, զրնութեան մերոյ զկապ խրզէցեր, զտարակոյս մրտաց բարձեր, զուր տրտմութեան փարատէցեր, զխաւարն անգիտութեան հալածէցեր, զհաւատացեալս ի քեզ
284բ ուրախացուցեր, զլոյս գի||տութեան քոյ ծագէցեր: Այժմ ցրնծան երկինք, պարեն հրեշտակք, զուարճանայ երկիր, խայտայ ծով: Լերիւ խրով արեգակն պայծառ ծագէ, լուսինն լիապէս էրեւի, աստեղք փայլեն ճաճանչիւք, տարերք ուրախանան, բոյսք գալարացեալ զուարթանան, և մեք խրախացեալ բերկրիմք ցրնծութեամբ: Վասն որոյ զի՞նչ տացուք տրիտուր տեառն աստուծոյ, այլ զանունն տեառն փառաւորեսցուք զօրհնապաղ: Փառք փրկչին, մեծութիւն մարդասիրին, գովութիւն գթածին, գոհութիւն ողորմածին, շնորհք բշտեմարանապետին, ուրհնութիւն ճարտարապետին, բարեբանութիւն բժրշկին: Եւ արդ զի՞նչ ես տացից, զի չեմ բաւական բանիւ յաւրհնութիւն տեառն. յամենայնի ամենայնիւ աւրհնեալ ես ամենակալդ աստուած:

Եւ յայնժամ իսկ և իսկ սուրբն Իսահակ հրամայէր ժողովել մանկունս ուշիմս և փափկաձայնս, երկարոգիս և մտառուս: Եւ հրամայէր
285ա զրպրոցս կարգել ըստ գաւառաց, գեղից և քաղաքաց||եւ մեծահոգ փութով ուսուցանել ջանիւ զդպրութիւն հայոց գրիս:

Եւ էր ի սրբոյն Գրիգորէ Լուսաւորչէ մինչեւ ցգիւտ գրոյս մերոյ ամք ՃԺ: Եւ ազգս մեր զայնչափ ժամանակն ի յայլ լեզուս էին գեգերեալ ընթերցմամբ աստուածային գրոց, պաշտամամբ և սաղմոսերգութեամբ իբր ի խաւարի անգիտութեան տատանեալք և տրխրեալք[67]: Վասն որոյ առաւել փոյթ յանձին ունէին, զի երագ վարժեսցին մանկունք յիւրաքանչիւր տեղիս և լուսաւորեսցեն զամենեսեան բանիւ վարդապետու-

---

62 չիք Այժմ բերկրեցաք... ի մի բերան:

63 բաժակ իմանալի մատռուակի:

64 չիք աստուծոյ:

65 չիք եկայք արբեցարուք... զիմանալի անձրևն:

66 չիք առէք արբեցարուք:

67 Վա՞շ արարչին, փառք փրկչին, մեծութիւն մարդասիրին, գոհութիւն գովելի տէրութեանն, շնորհք շտեմարանապետին, օրհնութիւն ողորմածին, բարեբանութիւն բժշկողին. և արդ զի՞նչ տացուք տրիտուր տեառն ընդ ամենայնի զոր արար մեզ, զի չեմք բաւական փոխարինի, այլ միայն զանուն տեառն կարդասցուք օրհնութեամբ զօրհնապաղ, զի մեծամեծ պարգևաց արժանիս արար զմեզ ամենաբաւականն աստուած, փառաւորեալն յամենայնի:

թեան[68]։ Եւ ապա ընտրեցին թուով Կ յաշակերտելոցն խորհրդական և պատշաճաւոր թիւք զծնընդականն ըզմայրն իմաստից և զկատարումն աւարտեալ[69] եւ առաքեցին յազգս և ի լեզուս օտարս[70] ուսանել իմաստութիւն, արուեստախօսութիւն և ճարտասանութիւն[71] և առնել թարգմանութիւն, յորոց և մի էր մեծն Մովսէս Խորենացին և Մամբրէ վերծանողն՝

285բ եղբայր նորին[72], Դաւիթ Անյաղթն և Եղիշէ,||Յովսէփ, Եզնակ, Արձան, Սըլան, Մուշէ և այլք[73], որք ընդ նոսա ամենեքեան, որք չոգան[74] գնացին յԱղէքսանդրիայ, ի Բիւզանդիայ և յԱթէնս և յայլ զաւառս ուսանել և վարժել իմաստութեամբ[75], որպէս զայլ ազգս, զի նախանձ մեծ էր յայնմ ժամանակի իմաստութեան և[76] ուսման ամենայն ազգաց։ Եւ ծաղկեալ էր իմաստութիւն[77] յաշխարհի։ Այսպէս և մերքս ամենեքեան գումարէին, ժողովէին[78], հանդերձէին, կազմէին, պատրաստէին, յուզի անկանէին, զերկայնաձիգ ճանապարհն հատանէին, ընդ ծովու մաքառէին, ի թեւրս թեթեւ թռչէին[79], յերիւարս փայտակերտս ելանէին, զերասանակս յայնալանջս ըմբռնէին, զխարազանս աղատարած յածէին, ի սաստեալ դաշտս անհաստատս արշաւէին, զմահ առաւել քան զկեանս ընտրէին[80], անհրաժեշտ դրպատակի ուշ ունէին, նախանձաւոր գործոց բարեաց լինելով՝ ի վաստակս և ի ջանս պատրաստէին. զանձինս, ժրրանայեն, տքնէին, աշխատէին։ Հարցասէրք և քննափափագք լինէին[81] ուսանելով, կրթելով,

286ա վարժելով, վաս||տակելով, պատրաստ ունելով զանձինս ի յերկս օգտակարս և ի գործս շահաւէտս։ Ընդ ծովու կրուէին, ընդ ալիսն մարտնչէին, հողմոց ընդդիմանային, նեղութեանց համբերէին, օտարութեան տանէին, նախատանաց ժուժկալէին, միայն ուսման ուշ ունէին և արգինաւոր շահից[82]։ Ոմանք և ի գծագրութիւնս տարից շահաւորեալ և ոմանք ի նիւթոցն պատրաստութիւն, բայց զիմաստութիւն ամենեքեան գեղեբէին, հաւաքելով յինքեանս զհոյլս իմաստիցն իբր զիմաստուն մեղու ժիր և գործունեայ՝ զանօսրագոյն և զշահաւէտ ծաղիկս հաւաքէին և զխո-

---

Եւ իսկ և իսկ ի հրամանէ մեծին Սահակայ ժողովեալ մանկունս խոհեմամիտս արամախոհս, քաջ ուշեղս, փափկաձայնս և գլխոցս բատ զատառոց զատառոց կարգէ, ուսուցանել մեծաւ պնդութեամբ, և հարիւր տասն ամ էր ի սրբոյն Գրիգորէ յորժամ զատ. գիր ազգիս մերոյ. և զայնչափ ժամանակս ի յայլալեզու գեղերանս էին տառապեալ փխ Վա՜չ քեզ Յիսուս... տառանեալք և սրխրեալք։

68 չիՐ և յաւաւրեացնն... վարդապետութեան։

69 զառաւել ուշիմս և զփափկաձայնս և զերկարոգիս փխ խորհրդական... աւարտեալ։

70 օտար զաւառաց փխ օտարս։

71 չիՐ և ճարտասանութիւն։

72 էր մեծն Մովսէս Խորենացին և եղբայր նորին Մամբրէ փխ և մի էր... եղբայր նորին։

73 և այլս բազումս։

74 չիՐ ամենեքեան, որք չոգան։

75 զիմաստասիրութիւն փխ և վարժել իմաստութեամբ։

76 չիՐ իմաստութեան և։

77 ուսումնասիրութիւն։

78 չիՐ ժողովէին։

79 երկայնաձիգ ճանապարհորդէին, ի ծովս ընթանային, ի թեւս թեթեւս թռչէին փխ զերկայնաձիգ... թռչէին։

80 միշտ ընտրէին։

81 զորոց զկնի բազումք յիւրաքանչիւր դարս և ի ժամանակս հանդիսանային, նախանձաւոր գործոց բարեաց լինելով ի վաստակս և ի ջանս պատրաստելով զանձինս, ժրանային, տքնէին, աշխատէին, հարցասէր լինէին փխ նախանձաւոր... լինէին։

82 չիՐ ընդ ծովու... շահից։

տանան ի բաց ընկենուին։ Եւ ըստ այսմ սարասի բարդեցին յինքեանս[83] զուսումնականն, զընթերականն, զերկրաչափականն, զհամարողականն, զերաժշտականն, զբերականն[84] և զբերդողականն և զայլսն ամենայն, որք են Ժ թւով, մասունք իմաստասիրութեան՝ բաժանեալք ի տեսականէն և ի գործնականէն[85]։ Ոմանց հաւաստեցին գիտութեամբ և

286բ բան զոմանս վեհագոյնք երեւէ||ին, ոմանց զարմանալիք թուէին և ոմանց բաղձալիք լինէին ժրութեամբ, ուշիմութեամբ, իմաստութեամբ, խոհեմութեամբ, ուսումնասիրութեամբ, գիտութեամբ, բանգտութեամբ[86]։ Ընդ ոմանս դատէին[87] քննութեամբ և զոմամբք զանց առնէին[88]։ Առ ընկերակիցսն՝ գովելիք, առ վարդապետսն՝ հաճելիք, բանասէրք, հարցասէրք, ընթերցասէրք, տքնասէրք, երկասէրք, աշխատասէրք, վաստակասէրք[89], ուսումնասէրք, ժրրասէրք, իմաստասէրք[90]։ Եւ այսպէս ջանային, արիանային, խիզախէին, զօրանային, հանդիսանային պատրաստելով, կուտելով, ժողովելով, յօդելով, բարդելով, բառնալով[91] բեռինս մեծամեծս և դժուարակիրս կապելով[92] զգրեանց բազմութիւն և զուսումն իմաստութեան բազմաց փափագելիս, բղձալիս[93], ցանկալիս, հեշտալիս, սիրելիս։

Եւ եկեալ բերէին[94], զայն հասանէին մեծաւ ճոխութեամբ յաշխարհս

287ա հայոց վաճառականքըն հոգեորք, փարթամացուցիչք եկեղեցւ||ոյ, խրախացուցիչքն մանկանց Սիոնի և զարդարիչքն հանդիսաւոր տօնից, սփոփացուցիչքն բազմախումբ ժողովրդոց, շնորհաց տեառն գովողքըն, սըրբոց նորին պատւողքն, փառացն աստուծոյ քարոզողքն, տնօրէնութեան աստուծոյ պատմաբանողքն, խորոցն աստուծոյ արտայայտողքն[95] ունելով ընդ ինքեանս բեռինս շահաւէտս և արդիւնարարս, մարգարիտս գեղեցիկս և ականս պատուականս՝ զբահխոհականն, զատենականն, զկացըրդականն, և զաստուածաբանականն, զարդարելով զհայք իմաստութեամբ և վեհագունիցն յունաց պանծալիս ցուցանելով զգիտութիւնս մեր ազգաց բազմաց զհաստատ զգայութիւնս, զէրեւակայութիւն, զտրամախոհութիւն, զկարծիս և զմիտս, և սրբօք[96] զարհեստ և զմակացութիւն և

---

83 ոմանք զատոյց զծագրութիւնս շահաւորեալ, ոմանք զիմաստս հաւաքեալ փխ ոմանք և-...յինքեանս։

84 զաստեղաբաշխականն, զքերականականն փխ զքերականականն։

85 ըզգործնականն և զտեսական իմաստասիրութիւն և զմասունս նոցա, որ են թւով երկոտասան փխ և զայլսն... ի գործնականէն։

86 բանագտակութեամբ։

87 դատէին։

88 զոմանս պատասխանւոյ արժանի ոչ համարէին փխ և զոմամբք զանց առնէին։

89 չիք վաստակասէրք։

90 չիք իմաստասէրք։

91 չիք բառնալով։

92 չիք կապելով։

93 բաղձալիս։

94 չիք Եւ եկեալ բերէին։

95 սփոփացուցիչքն բազմախումբ ժողովրդոց, զարդարիչքն հոյակապհանդէս տօնախմբութեան փխ և զարդարիչքն... արտայայտողքն։

96 զերկս աշխատողացն և զոյնս իմաստասիրութեան պանծալիս արմատացուցանելով և ծանօթ առնելով բազմաց, զգիտութիւն, զերեւակայութիւն, զմիտս, և զկարծիս և զզայութիւն փխ զհայք... և սրբօք։

զայլոն ամենայն՝ զզովելիսն և զպանծալիսն պատուականաց[97], զմեկնեալսն և զզատեալսն[98] յանպիտանեացն, քանզի մեծաւ հոգաբարձութեամբ փոյթ յանձին կալեալ երանելեացն զշահ և զօգտութիւն բազմաց|| (287բ) տնօրինել[99]: Բայց աւաղ յայսրմ վայրի, զի բանս այլ ոչ ես ախորժէ յառաջել, քանզի յորժամ հունձքն բազում էին, և մշակքն սակաւ, և արտորայքն սպիտակացեալ և ի հունձս հասեալ, և աղաչեցեալ եղև տէր հնձոցն. և եկին մշակքն ի հունձս: Եւ արդ՝ մանկաղք թերեալք, և մշակք պատրաստեալք[100], և եկեալքն ի հունձս հոգևորս չիք ի միջի, այլ ծղօտ միայն և խոզան, և սուղ ինչ նշմարանք արտորէիցն երևէին, քանզի վաճառականքն մեր հոգևորք յորժամ դարձան ի մեծայամ ուղևորութենէն, ոչ գտին զառաքիչսն իւրեանց, զի վաղճանեալ էր սուրբն Իսահակ և երանելին Մեսրոպ[101], և բարձեալ էր թագաւորութիւն Հայոց ըստ սրբոյն Սահակայ տեսլեանն, քայքայեալ էր վայելչութիւն աշխարհիս Հայոց[102], և սպառեալ ուսումնասիրութիւն, աղօտացեալ[103] էր կարգաւորութիւն, և բազմացեալ անկարգութիւն, նսեմացեալ ճշմարտութիւն, և զօրացեալ ստութիւն: Վասն որոյ ողբս առեալ հառաչէին երանելիքն, լային և արտասուէին[104], ձեռն ի ծնօտի հարեալ և ափս երեսաց եդեալ[105] ողբայ|| (288ա) ին: Երբեմն ի վերայ ծընկաց կացեալ[106] վարանէին, շիւարէին[107], տարակուսէին, զգլուխս շարժէին, զաչս ողորմ ածէին[108], զծնօտս ապտակէին, զբարձսն ծեծէին, ողբերգական բանս խօսէին, յեղանակաւ բացագանչէին, զանշունչ տարերս ի յողբս[109] շարժէին: Էհա՜, էհա՜ ասելով[110] աւաղական բանս յաճախէին, «Ի զուր աշխատեցաք[111],— ասէին,—ունայն վաստակեցաք, յանպէտս ջանացաք, ընդ վայր իմաստացաք, յանշահս դեգերեցաք, յանօգուտ ժրացաք»[112]: Աւա՜ղ երկայնութեան ճանապարհին, մեծագոյն ծովագնացութեան, յոլով տքնութեան, անհանգիստ աշխատութեան, ի ծովու ալեկոծութեան, ի ցամաքի ձանձրութեան[113], մեծագին բեռանց կապելոյն: Վաճառականքս պատրաստ, վաճառս առ ձեռն և որք վաճառեննն՝ չեն ի միջի[114]: Պասկս մերձ, և պր-

---

97 և զպիտանիսն պատուականաց փխ պատուականաց:

98 զազատեալսն և զմեկնեալսն փխ զմեկնեալսն և զազատեալսն:

99 զշահաւէտսն ժողովելով և զխոտանսն ի բաց ընկենլով փխ զշահ... տնօրինել:

100 մշակք պատրաստք և որք հնձին ոչ առաջի, վասնզի ծղօտ միայն և սուղ ինչ նշմարանք արտորայիցն երևէին փխ և եկեալքն... երևէին:

101 չիք սուրբն... Մեսրոպ:

102 չիք աշխարհիս Հայոց:

103 աղաւաղեալ:

104 Հաչէին, արտասուս յաչաց կաթեցուցանէին փխ երանելիքն... արտասուէին:

105 չիք և ափս երեսաց եդեալ:

106 ծնգաց կացեալ փխ ծընկաց կացեալ:

107 չիք վարանէին, շիւարէին:

108 ողորմ յածեցուցանէին..

109 գութ:

110 եհա՛, եհա՛ բարբառէին փխ էհա՛, էհա՛ ասելով:

111 ժրացաք:

112 չիք յանօգուտս ժրացաք:

113 մեծագոյն տքնութեանն, յոլով աշխատութեան, ի ծովու ալեկոծութեան, ի ցամաքի վաստակելոյն փխ մեծագոյն... ձանձրութեան:

114 և վաճառօղքն չեն ի միջի փխ վաճառս... ի միջի:

սակաղիքըս յօժարք, և որք պատկինն՝ չիք առաջի։ Բանքս ի բերան, և
288բ բանաբերքս իմաստունք, և որք ուսանինն՝ ոչ ուրեք գոն[115]։ Դայե||կքս
պատրաստք[116], և տէրնս լցեալք, և տրնդիայք չիք ուրեք[117]։ Վարդա-
պետքս մերձ, և ուսմունքս ազնիւ, և աշակերտել որ ոչ տեսանի[118]։ Վասն
է՞ր, կամ զիա՞րդ[119]. զի գերեցան, զի ցրուեցան, զի անօրինաց մատնե-
ցան, զի սրոյ ճարակ եղեն[120], զի քայքայեցան, զի ամայացան, զի հըր-
ձիգ եղեն[121], զի անտերունչք շրջեցան, զի բարձան ի միջոյ և ոչ ուրեք
գտանին[122]։

Եւ է՞ր ում զայս կրեցին և զմէ՞ այսր պատահեցան[123]։ Վասն չար
գործոց, վասն պեղծ խորհրդոց, վասն անառակ վարուց[124], վասն բազ-
մանալոյ անօրէնութեան, վասն անաւրէն գնացից[125], վասն անիրաւ դա-
տաստանաց և կաշառակերծութեանց[126], վասն գողութեան և ագահու-
թեան, վասն պոռնկութեան և շնութեան, վասն նախանձու և ատելու-
թեան, վասն նենգութեան և սպանութեան, վասն աղտեղութեան և ազ-
գապղծութեան, վասն մատնութեան և չարագործութեան, վասն արծաթ-
սիրութեան և փառասիրութեան, վասն չարախօսութեան և հայհոյու-
289ա թեան, վասն զրկանաց և ստութեան, սուտ վկայութեան և սուտ երդման,||
վասն հպարտութեան և ամբարտաւանութեան, ոխակալութեան և ոտնա-
հարութեան, իշխանասիրութեան[127] և գոռոզութեան, վասն դեղատու-
թեան և խարդախութեան, ծուլութեան և հեղգութեան, վասն մոլութեան
և զեղխութեան, և մանաւանդ վասն անարժան հաղորդութեան[128]։ Վասն
զի էղև քահանան իբրև զմի ի ժողովրդենէն, վասն զի կրօնաւորք զքա-
ղաքականութիւն սիրեցին[129], և ոչ զանազանին ի միմեանց վանականք և
աշխարհականք, այլ ամենեքեան խառնեցաք ի միասին և անպիտանա-
ցաք։ Վասն որոյ մատնեցաք ի ձեռս թշնամեաց մերոց, և ատելիք մեր
տիրեցին մեզ[130], անօրէնք նեղեցին զմեզ, և հակառակորդք մեր կոխե-
ցին զմեզ և կոփահարեցին անողորմաբար[131]։ Յաջ և յահեակ ատնջեցին

115 և խնդրօղք բանի ոչ երևին փխ և որք... գոն։

116 մերձ։

117 ոչ գտանին։

118 վարդապետք հուպ և ուսումն ազնիւ և աշակերտեալք ոչ հանդիպին փխ վարդապետքս... տեսանի։

119 չիք կամ զի ա՞րդ։

120 չիք զի անօրինաց... եղեն։

121 չիք զի հրձիգ եղեն։

122 չիք զի բարձան... գտանին։

123 չիք և զմէ՞ այսր պատահեցան։

124 չիք վասն չար... վարուց։

125 չիք վասն անաւրէն գնացից։

126 վասն կաշառառութեան։

127 «Վասն գողութեան... իշխանասիրութեան» հատվածը առկա է խառը դասավորությամբ, բացառյալ «Վասն նենգութեան..., վասն աղտեղութեան և ազգապղծութեան... և չարագործութեան», և հայհոյութեան, վասն զրկանաց... սուտ վկայութեան և սուտ երդման» բառերի։

128 չիք և գոռոզութեան... հաղորդութեան։

129 քաղաքականաց վարուց վարին փխ զքաղաքականութիւն սիրեցին։

130 յարեան ի վերայ մեր փխ տիրեցին մեզ։

131 և հակառակորդք կոփահարեցին յանխնայ փխ և հակառակորդք... անողորմաբար։

զմեզ և յամենայն կողմանց զրկեցին, և առաջի աչաց մերոց տարածեալ եղեւ ամենայն տեսակք վտանգից, որով վշտանամք անմխիթար[132]։

Ահ, գուբ և որոգայթ զմիմեանս փոխանակեն, յորոց ոչ գոյ փախուստ[133]։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց, զի [289բ] խստացուցաք||զպարանոցս մեր և ոչ խոնարհեցաք, ստունկանեցաք պատուիրանին տեառն և ոչ զղջացաք, այլ ի նոյն չարութեան կացաք մնացաք, մանաւանդ և թէ դարձաք սրտիւ յԵգիպտոս[134]։ Աւա՜ղ թշուառութեանս, աւա՜ղ եղկութեանս[135]։ Աւա՜ղ քեզ երկիր Հայոց, գաւառ գեղեցիկ, աշխարհ արեւելեան, հուպ առ Եդեմ։ Ծանի՛ր զլաւութիւն քո։ Ընդէ՞ր ազեղացար, ընդէ՞ր եղծար, վասն է՞ր ապականեցար, զմէ՞ զարշեցար, ո՞յր աղագաւ աղտեղացար յանչափս և անպիտանացար[136]։

Աւա՜ղ բնակիչք բարեպատիկք, ազգ ընտիր, ժողովուրդ սեպհական, քահանայութիւն, թագաւորութիւն, մարգարէութիւն, մարտիրոսութիւն։ Ծանի՛ր զլաւութիւն քո։ Ընդէ՞ր վրիպեցար, կորզեցար, մերժեցար և ի կորուստ մատնեցար[137]։ Աւա՜ղ տունկ տենչալի, դրախտ աստուածատունկ, բուրաստան բերրի, զբրգանք գովելի և թագ արքայութեան ի ձեռին աստուծոյ քոյ[138]։ Ծանի՛ր զազնուութիւն քո։ Ընդէ՞ր զարշեցար, աղտեղացար, խոտորեցար, մեղկացար, մոլորեցար, մաշեցար ի մեղս, կերպար յօտարաց[139]։ Եւ արդ, ո՞վ ողբասցէ զքեզ ըստ արժանւոյն, կամ [290ա] ո՞վ որ յեղանակեսցէ||ի վերայ քո զդաշնակումն որպէս և պարտն պահանջէ։ Եւ կամ ո՞ր ողբերգակ նուագեսցէ ի վերայ քո զողբս որպէս արժան է։ Երեմիա չէ ի միջի, և Դաւիթ վաղ ուրեմն հրաժարեաց, և թէ այլ որ է ողբերգակ՝ այժմ ոչ երեւի[140]։

Եկեղեցիք քո հրձիգ եղեն, և յարկք քո տապալեցան։ Աղեղնաւորք քո անկան, և սուսերաւորք քո կործանեցան։ Քաջազունք քո վրիպեցան, և զօրաւորք քո վիրաւորեցան։ Բնակութիւնք քո աւերեցան, և[141] մանկունք քո գերի վարեցան։ Զարիւնս բնակչաց քոց որպէս զջուր հեղին յերկրի, և դիակունք անթաղ մնացին։ Ողբան ճանապարհք երթևեկաց, ողբան ճանապարհք ուխտաւորաց, ողբան տեղիք աղօթից, ողբան ժողովք բնակչաց։ Կանայք այրեալք, կուսանք ազացեալք, հարսունք ողբացեալք, ծերք ապշեալք, երիտասարդք յիմարեալք, իշխանք զրմբեալք, զօրականք լքեալք, զինւորք զարհուրեալք, աղօթականք թմբրեալք, [290բ] լքեալ և ի բաց ընկեցեալ ժողովուրդք իբրեւ զհովա||նի մրգապահաց և որպէս զտաղաւար յայգոջ։ Ոչ իմաստուն ճարտարապետ և ոչ հանճարեղ խորհրդական, զի ուժանդակեսցեն։ Եղեաք նախատինս դրացեաց մերոց և այպն կատականաց թշնամեաց։ Ո՜հ դառնութեանս, աւա՜ղ

---

132 և առաջի տարածեալ ունելով զամենայն տեսակ վտանգից փխ և առաջի... անմխիթար։

133 ահ, գուբ և որոգայթ, և որ փախչի յահէ, անկցի ի գուբ, և որ ելանէ ի գբոյ՝ անգանի յորոգայթ, ըստ մարգարէին փխ Ահ, գուբ... ոչ գոյ փախուստ։

134 այլ դարձաք սրտիւ մերովք յԵգիպտոս փխ այլ ի... յԵգիպտոս։

135 չիք Աւա՜ղ թշուառութեանս, աւա՜ղ եղկութեանս։

136 չիք ընդէ՞ր եղծար... անպիտանացար։

137 չիք կորզեցար... մատնեցար։

138 կնիք վայելչութեան ի ձեռին տեառն և թագ փխ և թագ... աստուծոյ քոյ։

139 չիք ընդէ՞ր զարշեցար... յօտարաց։

140 Յերեմեաս չիք ի միջի, կամ այլ ոմն ողբերգակ փխ կամ ո՞վ... ոչ երեւի։

141 չիք Աղեղնաւորք... աւերեցան և։

կորրստեանս, ուա՜ղ թշուառութեանս[142], վա՜յ վշտիս, եղո՜ւկ վտանգիս։ Ո՞ւր են առաջնորդքն մեր բարեփառք, թագաւորքն մեր յաղթողք, իշխանքն մեր սկայազունք, ժողովուրդքն մեր խրախացեալք, յորժամ ցնծայր երկիրս Հայոց, յորժամ զուարճանայր ազգս արամեան, յորժամ բերկրէր ի բարեկրութեան, յորժամ խնդայր ի խրախութեան, յորժամ երանէր յամենայն ազգաց։ Վա՜յ ինձ, վա՜յ և դարձեալ վա՜յ ըստ Յովելայ[143]։ Կորեաք, կործանեցաք, եղծաք, ապականեցաք, թշուառեցաք, լի եղաք տառապանօք, ընկալաք ի ձեռանէ տեառն բազում անգամ զրագում անգամ զրաժակ բարկութեան, զրաժակ սրտմտութեան, զրաժակ 291ա ցասման։ Եւ արդ, ||, ներեա տէր, անսա տէր, խնայեա տէր, փրկեա տէր, ողորմեա տէր, զարթիր տէր, աւգնեա տէր[144]։ Դարձ առ մեզ աստուած փրկիչ մեր և դարձո զսրտմտութիւնս քո ի մէնջ։ Զարթո՛ զզօրութիւնս քո և եկ ի կեցուցանել զմեզ։ Ցոյց մեզ տէր զողորմութիւնս քո և զփրկութիւնս քո. տուր մեզ։ Մի՛ յաւիտեան բարկանար մեզ տէր և մի՛ թողուր զմեզ ի ձեռաց։ Մի՛ մեզ տէր, մի՛ մեզ, այլ անուան քում տուր զփառս։ Աստուած, դու դարձեալ կեցուսցես զմեզ, և ժողովուրդ քո ուրախ եղիցին ի քեզ։ Հաշտեա տէր, քաւեա տէր, կեցո տէր զժողովուրդս քո և աւրհնեա զժառանգութիւնս քո, հովուեա և բարձրացո զնոսա մինչև յաւիտեան[145]։

Այսպիսիս թերևս բարբառէին երանելի առաջնորդապետքն մեր, այսպիսի ձայնս արձակէին վաճառականքն ամէնառատ հոգևոր հրաշից[146], այսպիսի թելադիրք լինէին քարոզքն ճշմարտութեան, մշակքն հոգևորք, գործունեայքն գեղեցիկ, բեռնարբերքն շահաւէտք, փեսաւէրքն փառաւորք, 291բ հարսնածուքն երանելիք[147], առթօղքն արիականք, կու||սաստածքն պատւականք, վարդապետքն աստուածաբանք[148], ուսուցիչքն քաղցրաբանք[149], դայեակքն դիւրահամբոյրք, դաստիարակքն զօրովազութք, դպրապետքն բարեսէրք, հովիւքն քաջափառք, մատակարարքն երջանկացեալք, իմաստասէրքն մեծարգոյք, բարեբարքն [150] բերկրալիցք, ռետորեքն զւար-

---

142 զարինս քո հեգին որպէս ջուր շուրջ զՍիոնիւ, զաշխարհս ձեր առաջի ստարք կերիցեն, լքեալ թողաւ դուստր Սիովնի իբրև զհովանի մրգապահաց ի մէջ սեխենեաց և իբրև զտաղաւար յայգւոջ. արկին զգիակունս քո զէշ թռչնոց երկնից և գազանաց երկրի, եղաք նախատինք դրացեաց մերոց և այպն կատականաց թշնամեաց մերոց։ Աւա՜ղ կորրստեանս, ուա՜ղ թշուառութեանս, ուա՜ղ ամայութեանս փխ Զարինս ընակչաց... թշուառութեանս։

143 չիք վա՜յ վշտիս... Յովելայ։

144 Եղծաք, ապականեցաք, կորստեան մատնեցաք, ընկալաք ի ձեռանէ տեառն բազմապատիկ զրաժակ բարկութեան, զրաժակ դառնութեան, զրաժակ վշտի։ Եւ արդ զարթի՛ր, արդ տարջայիր, զոնէ զգաստացիր, արի կարդա առ տէր աստուած քո, աղաղակեա առ նա ցաւացին անձամբ, աղաչեա զերեսս նորա, պաղատեա առ նա ասելով փխ կորեաք... աւգնեա տէր։

145 Աստուած դու դարձեալ կեցո զմեզ և ժողովուրդ քո ուրախ լիցին ի քեզ, ցոյց մեզ տէր զողորմութիւնս և զփրկութիւն քո տուր մեզ։ Զարթո՛ զզօրութիւն քո և եկ կեցուցանել զմեզ, մի՛ յաւիտեան բարկանար մեզ տէր և մի՛ ձգեր զբարկութիւն քո ազգէ մինչև յազգ. մեք մեղաք և դու բարկացար. այլ ներեա տէր, անսա տէր, քաւեա տէր, հաշտեա տէր, ողորմեա տէր, փրկեա տէր. կեցո տէր փխ Զարթո՛... յաւիտեան։

146 չիք հոգևոր հրաշից։

147 հարսնածուքն երանելիք, փեսաւէրքն փառաւորք փխ փեսաւէրքն... երանելիք։

148 քաղցրաւայց։

149 չիք ուսուցիչքն քաղցրաբանք։

150 բարեբերքն։

ձայլիցք[151], ձանապարհորդքն ձոխացեալք, քանոնքն[152] Հաւատոյ, սիւնքն եկեղեցւոյ, ամոլքն արդարութեան, արմատքն անմահութեան, չափքն իմաստութեան, յարդարիչքն ուրինաց, հաստատիչքն բարեկարգութեան[153], արձանքն ամրութեան, պսակքն ձոխութեան[154], պարիսպքն եկեղեցւոյ, պատուարքն Հաւատոյ[155], զարդարանքն[156] զգաստութեան, յորդորիչքն կուսութեան, յարմարիչքն ողջախոհութեան, կազդուրիչքն պարկեշտութեան[157], խոհարարքն իմանալիք, մատրուակքն ցանկալիք, բարձրացուցիչքն եկեղեցւոյ, ամրացուցիչքն Հաւատոյ, յօրինիչքն կարգաց, 292ա յարմարիչքն կրօնից, կարգաւորիչքն առ||աքինութեանց[158], սփոփիչքն[159] տրտմեցելոց, մխիթարիչքն սգաւորաց[160], սանձքն անըզգամաց, փարթամացուցիչքն հաւատացելոց, առաջնորդքն[161] ուղ[ղ]ափառութեան, առիթքն փրկութեան, պատճառքն իմաստութեան[162], նորոգօղքն կարգաց եկեղեցւոյ[163], բանաւոր ծիծառունքն, ողջախոհ տատրակքն, գիշերոյ արաղաղքն, աւետեաց խաւսնակքն, մրափելոցն զարթուցիչքն, թմրրելոցն զգաստացուցիչքն, մոլորելոց դարձուցիչքն, խաւարելոց լուսաւորիչքն, մեղուցելոց քաւիչքն, յանցաւորաց յուսադրողքն, ապաշխարութեան յորդորողքն, բարեգործութեան յորդորիչքն[164], փառացն աստուծոյ պատմարանիչքն, ողբերգակքն հոգւոց[165], պարծանքն ազգիս մերոյ, ծերոց նեցուկքն, մանկանց դաստիարակքն, երիտասարդաց ամրութիւնքն, կուսանաց պընդութիւնքն, հասարակաց քաջալերիչքն, ազգիս երախտաւորքն, որք ըստ արժանւոյն և ոչ մի փոխարէն ի մէնջ գտեալք[166], որք խընդութեան ոչ էին խրախակիցք, այլ տրտմութեան գտան սգակիցք, որք ի բերկրիլն[167] ոչ վայելեցին ընդ բարեկրեալսն, այլ ի դառնութեան տըխրեցան ընդ վտանկեալսն, որք յանդորրութեան ոչ էին զըւարճակիցք, այլ ի թըշուառութեան գտան տրտմակիցք[168], որք ի բարօրութեան ոչ էին վայելեալք, այլ ի տառապանսն նըւաստակիցք լինէին, ճոխութեան ոչ հաղորդք, իսկ չարչարանացն կցորդք, որք ուրախութեան ոչ գըտան ուրախակիցք[169], այլ ողբոցն եղեն ձայնակիցք։

---

151 չիՄ աւետարերքն զըւարճալիցք։

152 «Քանոնքն հաւատոյ... արմատքն անմահութեան» հատվածը առկա է որոշ բառերի տեղաշարժությամբ։

153 Հիմնացուցիչքն հաւատոյ փխ հաստատիչքն բարեկարգութեան։

154 պճնութեան։

155 չիք պարիսպքն... Հաւատոյ։

156 զարդքն։

157 չիՄ յորդորիչքն... պարկեշտութեան։

158 չիՄ ամրացուցիչքն... առաքինութեանց։

159 մխիթարիչքն։

160 չիՄ մխիթարիչքն սգաւորաց։

161 Դաւանօղքն։

162 չիՄ առիթքն... իմաստութեան։

163 կարգաւորութեան փխ կարգաց եկեղեցւոյ։

164 չիՄ բանաւոր ծիծառունքն... յորդորիչքն։

165 գովելիք։

166 չիՄ պարծանքն ազգիս... ի մէնջ գտեալք։

167 բերկրութեանն։

168 չարչարակիցք։

169 Որք ի գերամբարձութեանն ոչ գտան բարձրացեալք, այլ ի տառապանսն նուաստացեալք, որք ցնծութեանն ոչ գտան գաակիցք փխ որք ի բարօրութեան... ուրախակիցք։

Եւ ապա զի՞նչ գործէին երանելիքն, զի՞նչ խորհէին և կամ զի՞նչ զմտաւ ածէին. հեռանային յաշխարհէս, յինքեանս[170] եթային, զամայութիւն սիրէին, զանապատս ողջունէին[171], զլռութիւն պատուէին[172], յառանձնութիւն յօժարէին[173], աղօթից պարապէին, արտասուաց հետևէին[174], մըշտամռունչ հեծեծանօք ընդ ինքեանս և[175] ընդ աստուած խօսէին, յանաւոր աքնութեամբ զգիշերսն ի գլուխ||հանէին յաղօթսն աստուծոյ[176], առվայլըլուկ զանձինս առնէին, ծարաւով տանջէին, նեղութեանց համբերէին, խարազնազգեստք լինէին, այծէիւք զըսպէին, մաշկեղէնօք պարտակէին, թեփակերք լինէին, ընդովք շատանային, բանջարովք կերակրէին, արմատովք բաւականային, զգոյնս մարմնոյ թառամեցուցանէին, զախտս մարմնոյ սանձէին, ընդ բանսարկուին կռուէին, չարին յաղթէին, զմեքենայս նորին կոխէին, զփառս ատէին, ի հպարտութենէ փախչէին, զխոնարհութիւն սիրէին, զամբարտաւանութիւն ի բաց հալածէին, սիրովն աստուծոյ տոչորէին, վերնոյ փառացն ցանկանային, երկնային մեծութեան փափագէին, սուգ մեծ ի վերայ անիշխանութեան ազգիս ունէին և զմարմինս իւրեանց ի խաչ հանէին, ընդ Քրիստոսի կարեօք և ցանկութեամբք[177]։ Աճէին, բազմանային, ճշմարիտ իմաստունք լինէին[178], զգործս տեսութեան ասպընջական առնէին, նախանձ բարի շարժէին|| ամենեցուն և թեւագիրք բարւոք ճանապարհի լինէին, ի լաւութեան բանից գործովք քարոզք լինէին[179] և թէպէտ ծածկէին զմարգարիտն գեղեցիկս և զակունս պատուականս թաքուցեալ յինքեանս, այլ ըստ տէրունական հրամանին ոչ թաքչէր քաղաք առաքինութեան ի վերայ լերին հաստատոյ, եւ ոչ ճրագ ճշմարտութեան կարէր ծածկիլ ընդ գրւանաւ անհոգութեան, զի թէպէտ սուրբքն նուաստացուցանէին զինքեանս, աստուած զնոսա բարձրացուցանէր, պատուէր և փառաւորէր, յական հանէր և երևելի առնէր[180]։ Վասն որոյ զոր ոչն կամէին, կրէին ըստ առաքելոյ[181], կամ ի մարդկանէ խնդրեալք և կամ ի հոգւոյն շարժեալք անհամեմատ[182] զանձիւք լընուին զեկեղեցի, անգին մարգարտովք զարդարէին զառագաստ Սիո-

(Margin: 293ա; 292բ)

---

170 ինքեանք՝ յինքեանս։

171 ընակէին։

172 լաւութեան տային զանձինս փխ լռութիւն պատուէին։

173 չիք յառանձնութիւն յօժարէին։

174 արտասուօք զատս տեսան թանային փխ արտասուաց հետևէին։

175 չիք ընդ ինքեանս և։

176 չիք յաղօթսն աստուծոյ։

177 ցրտակէզ և տօթակէզ լինէին, լեղկ մաշկօք շրջէին, խարազանազգեստք լինէին, այծէիւք զպէին, թեփակերք լինէին, ընդովք շատանային, պտղովք ծառոց բաւականային, բուսովք դալարեօք և արմատովք, սիրովն աստուծոյ տոչորէին, սուգ մեծ ի վերայ ազգիս ունէին, բայց երկնաւորն յուսով մխիթարէին, ի նեղութեան և յանձկութեան տանջէին զմարմինս խաչ հանելով, կարեօք և ցանկութեամբք հանդերձ փխ նեղութեանց համբերէին... ցանկութեամբ։

178 իմաստից հետևէին։

179 ի բանից լաւութեան գործովք քարոզք լինէին, նախանձ բարի ամենեցուն շարժէին փխ նախանձ բարի... քարոզք լինէին։

180 Բայց սակայն սուղ ինչ յայտնէին, փոքր ինչ ծանուցանէին. զոր օրինակ հուր ընդ յարգի ոչ կարիցէ զանխլանալ, այլ կամ ի մարդկանէ առթեալ վառիցի, կամ ի փոքրագոյն սրոյ շարժեալ բոց արձակիցէ փխ այլ ըստ տէրունական... երևելի առնէր։

181 այսպիսի իմն կրէին փխ վասն որոյ... առաքելոյ։

182 մեծագին։

նի, անպատում զարդուք, գեղապաճոյճ պճնէին զրամբիշ երկնաւորն
294ա արքայի՝ ճաւիք ներբողենեօք, պատմութեամբք հոգևորօք, իմաս||տիւք
զարմանալեօք, մեկնողութեամբք տառից[183], թարգմանութեամբք, աստա-
տրպութեանց յօրինմամբք։ Ուսուցանէին, կրթէին, վարժէին, պայծառա-
ցուցանէին, զգաստացուցանէին, օգտեցուցանէին, ճոխացուցանէին և փար-
թամացուցանէին զաշակերտեալսն։ Եւ այսպիսի հանգիսիւք կացեալք[184]
փայլեցան, պայծառացան, զարմանալիք ցուցան, հիանալիք գտան, երևե-
լիք էղեն, ցանկալիք, բաղձալիք[185], տենչալիք, ըղձալիք, փափագելիք,
անձկալիք, սիրելիք բազմաց[186], ճոխք, ճշմարիտք, իմաստունք, մաքուրք,
բարձունք, փառաւորք[187] մեծք, առաքինիք, սուրբք, անուանիք[188] յորոց
ոմանք գլուխք եկեղեցւոյ կացին, և ոմանք ակն էղեն, ոմանք ձեռք
երևեցան[189] և այլք՝ այլ ինչ բստ պատշաճի ոտից[190], զի աստուածային
ընտրութիւն կոչէ, զարժանիսն բստ յառաջագոյն սահմանելոյն իւրոյ[191],
վասն որոյ աղ եղեն երկրի և լոյս աշխարհի և փառք ազգիս մերոյ։ Անուն
բարի թողին յաշխարհի և ի վերինն Սիոն վեր համբարձան[192]։

294բ ||Ոչ պատուեցան ի մէնջ, որպէս արժանն էր նոցա, ոչ փառաւորեցան,
որպէս պատշաճն էր, ոչ յարգեցան, որպէս արէնն էր, ոչ փոխարինեցան
որպէս վայելէրն, ոչ գրգեցան, որպէս բմբռնն էր։ Վասն որոյ առ աս-
տուած փառաւորեցան, յաստուծոյ պատուեցան, բարձրացան և պսակե-
ցան։ Առ որ անձկացեալն էին, ի նա յուսացան և այնմ կարօտացան, որ
զփառաւորիչսն իւր փառաւորէ և փառաւորի ի խորհուրդս սրբոց իւրոց։
Իսկ մեր առաջնորդքն և պարծանքն բոլոր տանս թորգոմեան և աբրա-
համեան զարմիս արամեան յաստուծոյ մեծարեցան և յերկինս վերացան,
ընդ հրեշտակսն դասեցան և արմարմնոցն ձայնակցեցան փառաւորելով
զաստուածն յաւիտենական[193]։

Այլ ես անգիտացեալ պչափ անձին իմոյ[194], ի վեր քան զարժանն իմ
յանդգնեցայ, վասն որոյ չմեղադրանս յամենեցունց պահանջեմ, զի սէր
զերայաղթ ամենայնի հանդիպի, և ինքն պարսաւել յամէրէ ոչ գտանի[195],
զոր տիրապէս ես կրեցի յաղթեալ ի սիրոյ[196]։

295ա ||Բայց երանելին Մեսրոպ արար գիրս և վրաց բստ լեզւին իւրեանց։
Այլև աղուանից ես արար նշանագիրս բստ կխահագագ և խեցբեկոր լեզւի

---

183 մեկնողական հանդիսիւք։

184 չիՄ թարգմանութեամբք... հանդիսիւք կացեալք։

185 երևելիք եղեն, հիանալիք գտան ցանկալիք տեսան, բաղձալիք հաւատեցան փխ հիա-
նալիք... բաղձալիք։

186 չիՄ տենչալիք... սիրելիք բազմաց։

187 չիՄ բարձունք, փառաւորք։

188 չիք անուանիք։

189 հանդիպեցան։

190 և ոմանք այլ ինչ փխ և այլք... ոտից։

191 չիՄ զի աստուածային... իւրոյ։

192 Քանզի քաղաք ի վերայ լերին թաքչել ոչ կարէ և ոչ ճրագ ընդ ծածկաթիւ զանխլացի.
վասն որոյ աղ եղեն երկրի և լոյս աշխարհի, և քաղաք ապաստանի փխ վասն որոյ... վերհամ-
բարձան։

193 չիՄ Ոչ պատուեցան... յաւիտենական։

194 զանձն իմ և փխ զչափ անձին իմոյ։

195 տեսանի։

196 չիՄ յաղթեալ ի սիրոյ։

նոցա[197], զի ըստ առակին՝ յորս առիւծուց աղուեսք բազում կերակրին, և յարքայորդոյ թագաւորելն՝ թագաւորազունք յոլովք ճոխանան։

Իսկ սուրբն Իսահակ հայրապետն մեծ անդադար թարգմանութեան պարապէր և վարդապետութեան մինչ ի խորին ծերութիւն[198]։ Որ և արտասահման լինէր յաթոռոյն երանելին վասն ճշմարտութեան և ոչ դադարէր երբէք ի վարդապետութենէն, թէպէտ և ի բաց եկաց յաթոռոյն։ Ըստ որում և մարգարէաբար զյետինսն տեսանէր և զսքանչելիսն պատմէր և թէպէտ և բռնադատեցաւ յոյժ, ոչ առ յանձն նըստիլ յաթոռ իւր[199]։ Եւ վախճանեցաւ երանելին յետ բազում ճգնութեանց և առաքինասէր վարուց ի Բագրևանդ գաւառի, որ է Վաղաշկերտ, ի գեօղն Բլուր կոչեցեալ, որ նշանակ էր զբարձրանալ սրբոյն առ աստուած, ի նաւասարդի Լ, յաւուր հինգ||շաբաթի՝ ի պատիւ մաքրութեան հընգից զգայութեանց, որ և ծնունդ սրբոյն ի նմին աւուր առի եղեալ՝ ի նաւասարդի Լ, սկիզբն և կատարածն ըստ հաճոյից աստուծոյ, ըստ նմանութեան ամէնաւրհնեալ կուսին Մարիամու աստուածածնին, որ ի նոյն աւուր ծնընդեանն և փոխումն հանդիպեցաւ։ Եւ այն է բնական մահու սահմանն ըստ արարչագիր սահմանին, [որ] ի ծնընդեան աւրն և մարդոյ վաղճանն հանդիպի[200]։

295բ

---

197 Բայց մեծն Մեսրովբ, յետ այնչափ հանդիսաւոր աշխատութեանցն և գիւտի գրոյս մերոյ ուղղութեամբ շնորհացն աստուծոյ և կարգելոյ դպրոցս մանկանց ամենայն ուրեք և վարժելոյ մեծով հոգաբարձութեամբ չուեալ եւս և ի Վիրս և անդ ըստ լեզուի նոցա արարեալ նշանագիր, վարդապետս և դպրոցս ի նմա եւս կարգէ, և ապա իջեալ ի կողմն Աղուանից և նոցա եւս ստեղծանէ նշանագիրս ըստ կիսահագագ և խեցբեկոր լեզուի նոցա. վերակարգելով և ի նմա եւս աշակերտանոցս փխ Բայց երանելին... լեզուի նոցա։

198 Եւ ապա իւրն դարձեալ դառնայ ի Հայս և գտանէ զսուրբն Սահակ անդադար ի թարգմանութեան պարապեալ փխ Իսկ սուրբն... ծերութիւն։

199 չիք Որ և արտասահման... յաթոռ իւր։

200 Բայց ի վախճանելն Վռամշապհոյ արքային Հայոց, գնայ ապա մեծն Սահակ առ արքայ Պարսից Յազկերտ և աղաչէ արձակել զկապեալն Խոսրով ի Հայս փոխանակ Վռամշապհոյ, որոյ և կատարեալ խնդրուածս սրբոյ առնն, տայ Խոսրովայ զտէրութիւն Հայոց։ Բայց նա ի կրկնակի թագաւորելն՝ ոչինչ աւելի քան զմի ամ կեցեալ՝ վախճանի։ Իսկ ի վախճանելն Յազկերտի, և փոխանակ նորա թագաւորեալ երկրորդն Վռամայ ի Պարսս, նա բազում դառն անիրս զարթուցանէր ի Հայաստանեայս և վրդովէր զամենայն բարեկարգութիւնս յեղծումն և յապականումն հասուցանել, զոր և տեսեալ սրբոյն Սահակայ զչարին արկածս, գնայ ի մասնն Յունաց. վասն զի յերկուս ճեղքեալ բաժանեալ էր Հայք՝ ի մէջ կայսեր և Պարսից։ Իսկ մեծն Թէոդոս թէպէտ ի սկզբան անդ ընդ ակամբ հայէր առ ի չընդունել, սակայն իմացեալ ի բազմաց լի զնա աստուածային շնորհօք և ամենայն առաքինազարդ վարուք, մեծաւ պատուով և բարի օժանով ընդունի իբրև զնոյն ինքն առաքեալ Քրիստոսի, այլ և զնշանագիրսն, որ առ ի նոցանէն յԱստուծոյ ընծայեցաւ, հրամայէ փութով ուսանել և զծախս դպրոցացն յարքունուստ լինել։ Եւ ապա սուրբն Սահակ իսկ և իսկ առաքէ զՎարդան թոռն իւր առ արքայն Պարսից Վռամ խնդրել զհաշտութիւն, և նորա մեծարեալ՝ զխնդրուած սրբոյն կատարէ, թագաւորեցուցեալ Հայաստանեայցս զԱրտաշիր որդի Վռամշապհոյ։ Սա զեղխէր միշտ ի գիջական չարիս անարգել, զոր և պատճառս քսութեան նախարարացն զայն գտեալ, թուեցուցանէին իբր ապստամբեալս զնորեանս առ ի նմանէն զոլ. և բողոք առ մեծն Սահակ բարձեալ հայցէին կցորդակից լինելոյ իւրեանց առնել և չարախօս առ արքային Պարսից, զի կամ՝ կալցի ի կապանս, կամ՝ ի բաց ընկեսցի թագաւորն Հայոց։ Այլ նա թէպէտ և զիրս բամբասանաց ի սոսա ոչ հաճէր, սակայն մատնել զարքայն իւր հեթանոս արքայի ոչ առնոյր յանձն, յուսալով տեսանել զկանգնումն զլորեցելոյն և ոչ՝ զընկճումն։ Քաւ լիցի ինձ զայլոյ զիմն մատնել մոլորեալ ոչխար. զի թէ անառակ է, սակայն սուրբ մկրտութեամբն դրոշմեալ է, պոռնիկ է, այլ քրիստոնեայ է, գիջացեալ մարմնով, այլ ոչ անհաւատ հոգւով, լեղխ վարուք, այլ ոչ կրակապաշտ։ Եւ այսպէս զախտացեալ իւր ոչխարն ոչ փոխանակէր ընդ առողջ գազանին։

Իսկ զպատուական և զմաքուր մարմին սրբոյ Հայրապետին տարեալ դադարէր ի Տարօն, ի բնիկ գաւառն իւր, և եդին պատուով ի սեպհական գեօղն իւր յԱշտիշատ: Սա զանմարմնոցն բերէր յինքեան զվարս սուրբ Հայրապետն Իսահակ և զանմահն Թողոյր իւր յիշատակ բարւոյ ընդ վերնական դասուցն դահակալեալ ի փառս Աստուծոյ[201]: Եւ զկնի վեց ամաց և սուրբն Մեսրոպ[202] փոխի ի կենաց աստի ի Վաղարշապատ քաղաքի, ընդ հովանեաւ էջմիածնին, սուրբ Գրիգորաշէն կոմբեղայարդ մեծ կաթուղիկէին, ի մեհեկի ամսոյ ի ԺԳ, որ գրեթէ ըստ երկնայնոցն
296ա զա||րդու ամենեցուն զինքն բոլորապէս ցուցանէր[203]: Եւ նոյն ժամայն[204]

---

Այլ Թէպէտև սուրբն այսպէս արդարախոհ լինէր, սակայն Վռամայ զլսելիս չարախօսացն մատուցեալ, և առաւել Սուրմակայ որ զեզուն սուսեր սատակիչ էր պատրաստեալ, ակն կալեալ փոխանակ սրբոյն Սահակայ զահակալիլ յաթոռն. և ապա ի բանս զԱրտաշիր արգելեալ, և մարզպան Պարսիկ Հայոց կացուցեալ, և զՍուրմակն չարալեզու փոխանակ սրբոյն Սահակայ կացուցանէ, որ ոչ աւելի քան զմի ամ տեւեալ, հալածի ի նոյն նախարարաց: Յետ որոյ, յետ նորա կացուցանէ Վռամ զմին ասորի Փրքիշու, այր ապարասան և յափշտակող, որ ամենեկին կանամ[բ]ք զառն իւր մատակարարէր, և վասն զի և զնա եւս նախարարքն ատեցին, ապա տայ զայլ ոմն ասորի Շմուէլ անուն, որ հետևող զաոնէր վարուցն Փրքիշու, առաւել եւս ագահութեամբ մասամբ: Եւ մեծին Սահակայ միայն զվարդապետելն հրամայէ և ձեռնադրել զորս Շմուէլն հաւանի: Բայց մեծն Սահակ ի գնալն իւրում առ Պարսից արքայն Վռամ, բաղում ինչ համարձակութեամբ խօսեցեալ առաջի նորա և յանդիմանեալ զանաստուածութիւն նոցա, եւս առաւել վասն Արտաշիրի չարախօսութեանն, զի ասէր, եթէ վասն ձակաձանութեամբ ախտին է ննջելն զնա, այն ձերոց օրինադրութեանցդ պանծալին է. և թէ ոչ՝ այլ ինչ ոչ է վնասակար. և այնչափ առաւել ձաղանօք եպերեալ զնոսա վասն անմտութեանն իւրեանց, մինչ զի զարմանային ընդ իմաստութիւն և ընդ համարձակութիւն նորա, զի խօսէր անպատկառ զվկայութիւն տեառն առաջի թագաւորաց ըստ մարգարէական հրամանին: Եւ եկեալ երանելին ի գաւառ իւր նստէր լռելեայն, պարապելով աղօթից և վարդապետութեան սիրովն առ Աստուած, սուգ մեծ ունելով ի սրտի վասն կուրութեան մտաց անզգամաց, և ոչ տայր թոյլ անձին մխիթարել ի վերայ բեկման ժողովրդեան իւրոյ: Իսկ նախարարքն Հայոց իբրև տեսին զինքեանս ամօթալից ի վերայ անմտութեան գործոց իւրեանց, դարձեալ միաբան զղջացեալք առ սուրբ Հայրապետն Սահակ, աղաչէին, փարէին, առաջի անկանէին ասելով. «Մեղաք առաջի Աստուծոյ և սրբութեանդ քում», և հայցէին զի վերստին յանձն առցէ զառաջնորդութիւն հօտին իւրոյ: Իսկ Նա յարտասուս եղեալ պատմէր նոցա. եթէ յառաջ քան զբաղում ամս սուգ մեծ ունէի ի սրտի իմում, զի ոչ ետ ինձ Աստուած զաւակ արու որպէս նախնեացն իմոց. և երևեցաւ ինձ հրեշտակ Աստուծոյ և ասէ. Մի՛ տրտմիր վասն այդորիկ, եթէ ոչ ետ քեզ Աստուած զաւակ արու և մի՛ կոծեր զանձն քո, այլ գիտասցիր զի յԱստուծոյ է իրդ այդ, զի բառնալոց է քահանայութիւն՝ յազգէ սրբոյն Գրիգորի, և թագաւորութիւն յազգէն Արշակունեաց, և արդ դու մի՛ տրտմիր, այլ՝ մխիթարեա զանձն քո: Եւ պատմեալ նոցա զտեսիլն զամենայն մի ըստ միոջէ, և ասէ ցնոսա. «Որդեակք, փոխանակ իմ տէր հովուեսցէ զձեզ և ինքնին վերակացու լինիցի ձեզ, որ նախախնամօղն է ամենայնի: Այլ ինքն Թէպէտ ոչ առնոյր յանձն կրկին առաջնորդել նոցա, սակայն ոչինչ կասէր միշտ զհոգևոր կաթնն զինցուցանել մանկանց եկեղեցւոյ:

Եւ այսպէս բարի վարուք և առաքինասէր հգնութեամբ և մեծաւ խնամարկութեամբ կացեալ ի մարմնի երկարելով մինչև ի խորին ծերութիւն և ի հասեալ ժամու հիւանդացեալ հիւանդութիւն մեծ ի Բագրեւանդ գաւառի, ի գեօղն Բլուր կոչեցեալ և առ Քրիստոս վերափոխի ի նաւասարդի յերեսունն, յաւուր հինգշաբաթւոյ որ և զծննդեան սրբոյն ի նմին աւուր առեալ եղեալ փխ եւ վախճանեցաւ... վաղճանն հանգիստ:

201 Սա զանմարմնոցն բերէր յինքեան զվարս ի մահկանացու մարմնի զանմահն Թողոյր իւր յիշատակ բարւոյ, ընդ հրեշտակականսն դասակցելով պարըս, զահակալեալ եւ ընդ աջմէ աթոռոյն քրիստոսականաց յանդ երանութիւնսն: Իսկ զպատուականն նորա մարմին տարեալ հանգուցանեն ի Տարօն, ի գեօղն Աշտիշատ փխ Իսկ զպատուական... ի փառս Աստուծոյ:

202 բայց զկնի վեցից միայն ամաց ապա սուրբն Մեսրովբ փխ եւ զկնի... Մեսրոպ:

203 որ գրեթէ ըստ երկնայնոցն զուարթնոց զարդու ամենեցուն զինքն բոլորապէս ցուցանէր փխ ընդ հովանեաւ... ցուցանէր:

204 որ ապա և փխ եւ նոյն ժամայն:

նշան սքանչելի ի վերայ նորա փայլատակէր, խաչանման լոյս նշուլի առկայծեալ երկար ժամս փառաւորելով զխաչակիր մարմինն, զի որպէս չարչարանօք միշտ խաչակցէր Քրիստոսի, նմին և պատուեալ գտանէր ի ժամ վաղճանին։ Եւ մեծաւ հանդիսիւ տարեալ հանգուցանէր զնա իշխանն Հայոց Վահան Ամատունի, որ մեծազօրն էր ի ժամանակին յայնմիկ յիւր սեպհական գեօղն՝ յՕշական[205]։ Վասնզի բազում[206] հակառակութիւն լինէր վասն երանելւոյն, զի իւրաքանչիւրն ոք յիւրն յօժարէր բռնակութիւն զխաչակիրն հանգուցանել զմարմին սրբոյն[207]։ Եւ զհետ ընթանալով դագաղացն, նոյն լուսաւորողն տեսիլ խաչանման[208] և անդ ի հանգիստ զնա փոխեալ՝ ապա և տեսիլն աներևոյթ լինէր։ Եւ այս մեծազօրն պատիւ սրբոյն առ ի յաստուծոյ, որ փառաւորէ զփառաւորիչս իւր և զսիրելիս անուան իւրոյ[209]։

Իսկ աշակերտք երանելեացս, զոր յառաջագոյն յիշեցաք՝ մեծն Մովսէս Խորենացին, որ ի ժամ վաղճանին մարգարէանայր առ իշխանութիւն
296բ Թագաւորու||թեան Արծրունեաց և Բագրատունեաց բազում բանս, որ ասէր և զայս, թէ ի զարմէ և ի զաւակէ ձերոյ մարտիրոսք լինելոց են վասն Քրիստոսի, որպէս և եղեն յետոյ յոլովք։ Նաև Դաւիթ Անյաղթն կոչեցեալ և այլքն ամենայն աշակերտեալքն, զերանելեաց վարդապետացն բերելով յինքեանս զնմանութիւն, զսրբոյն Սահակայ ասեմ և զՄեսրոպայ սպանանելով զանգամս երկրաւորս, և այնպիսի աստուածահաճոյ վարուք փոխեցան յաշխարհէս[210]։ Այսպիսիք էին վարք երանելեացն և այսպիսի հանդէս քաջութեան նոցա և բարւոք քաղաքավարութեան նոցա[211], մանաւանդ թէ ևս առաւել, որպէս և յայտ է ի պատմութեանց նոցա, ի բանից և ի գործոց[212]։

Սոքա պարծանք տանս Թորգոմայ, սոքա ծաղիկք աշխարհիս արամեան, սոքա բողբոջք հայկական ազինս[213], սոքա ամուրք հաւատոյ, սոքա[214] սիւնք եկեղեցւոյ, սոքա ամրութիւնք օրինաց, առաջնորդք արդարութեան, պարիսպք պահպանութեան[215]։ Սոքա առունք անմահութեան, արմատացեալք ի գնացս ջուրց՝ տալով միշտ ի դէպ ժամանակի զիմանալի
297ա պտուղն հո||գեկեցոյց, որոց կերակուր մնայ ի կեանս յաւիտենից։ Սոքա պսակք եկեղեցւոյ և պարծանք նազելի որդոց մօր մերոյ Սիոնի, բազում հարս մեզ ի փառս ածեալ, որովք համարձակապէս պարծին առ

---

205 զի աստուած զփառաւորիչս իւր փառաւորէ և փառաւորի ի պատիւ սրբոց իւրոց փխ զի որպէս... գեօղն յՕշական։

206 և յոլով։

207 զսրբաննեալ մարմին նորա փխ զմարմին սրբոյն։

208 և զօրացեալ լինէր ալքն Աշտականու մեծ իշխանն հայոց Վահան և մեծաւ հանդիսիւ տարեալ հանգուցանէր զնա ի յառաջեալ գեօղն Աշտական, և զհետ ընթանալով դագաղացն նոյն լուսեղէն խաչանման տեսիլ փխ եւ զհետ... խաչանման։

209 չիք և այս մեծազօրն... անուան իւրոյ։

210 չիք իսկ աշակերտք... փոխեցան յաշխարհէս։

211 չիք և այսպիսի... նոցա։

212 քան զայն զոր գրեալ է ի կատարեալ պատմութեանն նոցա փխ որպէս և... ի գործոց։

213 չիք Սոքա պարծանք... հայկական ազինս։

214 չիք Սոքա։

215 պարիսպք պահպանութեան հաւատացեալ ժողովրդոց, առաջնորդելով ի շաւիղս արդարութեան փխ սոքա ամրութիւնք... պահպանութեան։

աստուած առնլով. ահաւասիկ ես և մանկունք իմ հոգևոր երկանց[216]։ Սորա ազբիւրք եդեմայունք, ի շնորհաց տեառն յառաջեալք արբուցանելով զբանական երկիր ծարաւոտ կենդանական վտակօք, որոյ մի անգամ արբեալն երկրորդին ոչ կարօտի ըմպելոյ[217]։ Սորա դայեակք հոգևորք, զորովագութ սիրով սընդիայ մանկանց Սիոնի պլոյս գիտութեան[218] ջամբելով կերակրելոցն, որք ոչ միայն լուսաւորեալ աշակերտելոցն անձինք, այլև լուսատու լինելով բազմաց[219]։ Սորա քարոզք որոյն աստուծոյ[220] անթիւ կուսանաց անձինս ածելով երկնից արքային[221] առատաբուխ վարդապետութեամբ, զորս յորդառատ բղխմամբ արբուցանէին զամենեսեան իբր զՏիգրիս և զԵփրատ, կամ որպէս զՅորդան, որ ասի Յորդանան[222]։ Սորա գտողք[223] զրոյ առհմիս մերոյ ափաբեաոց և սողորայից եր||կարօղի տարիցն վեհից ի յարմարումն երից տասանց և վեցից[224], որովք զանտարբն տարրացուցին և զաննիւթն ի նիւթ փոխեցին[225] զանմարմինն ընդ մարմնոյ կապելով և զանտեսն ի տեսութիւն փոխարկելով[226]։

297բ

Ո՞վ գերապանծ գիր զարմանալի, ո՞վ հիահրաշ տիպ գերազարդեալ, ո՞վ ախորժելի սանդուխտ մեր եկից, անծանօթ և ծանուցեալ, հեռաւոր և մօտակաց, անբարբառ և ճարտասան, երգարան և յամրախօս, սուրհանդակ և տեղապահ[227], անթև թռչուն և անշարժ կայուն[228], կայլեք ընթացեալ[229] և թռչմամբ մնացեալ, երագընթաց և յամրաշարժ, ի տեղի և անտեղի, ի մարմին և յանմարմին։ Եւ արդ, զի՞նչ ես ասացից[230] քաջիւք զգայութեամբք ի քումդ սպասաւորութիւն։ Դեգերին յոյով բանականք, լռանին և ունայն են, պարպատին և թափուր են, յաղին և սովեալ են։

Եւ արդ, զի՞նչ զքեզ կոչեցից, ո՞վ գիր[231], իմանալի, թէ զգալի, երկնային, թէ երկրային, աստուածային, թէ մարդկային, ժամանակեան, թէ անմահ[232]։ Յերկրայս զամ, թէ զի՞նչ զքեզ առասացից։ Դեգերեալ եմ առ գր||րանս քո, վարանեալ զամ առ բանի քոյ տարակուսիմ ես առ սարքսի քոյ, նեղիմ յեղանակաւ քոյ[233], տանջիմ ի ներբողել քոյ, օտարանամ ի ծանօթանալ քոյ։ Այլ, սակայն, աստուածային փչումն զքեզ առասացից։

298ա

216 զոր ես ինձ ածր փխ հոգևոր երկանց։
217 չիք ըմպելոյ։
218 չիք գիտութեան։
219 յոլովից խնդրողաց փխ լինելով բազմաց։
220 Սոքա օրհնողք երկնից արքային փխ Սորա... աստուծոյ։
221 Թագաւորին անմահի փխ երկնից արքային։
222 զորս յորդաղոյն հոսէին, իբրև զՏիկրիս և զԵփրատեանս, կամ իբր Իորար և Դան, որ լսի Յորդանան փխ զորս յորդառատ... Յորդանան։
223 գտակք։
224 չիք ի յարմարումն... վեցից։
225 յեղեցին։
226 չիք և զանտեսն ի տեսութիւն փոխարկելով։
227 և միշտ հեծեալ։
228 անսասն գնայուն։
229 վերացեալ։
230 չիք Եւ արդ, զի՞նչ ես ասացից։
231 չիք Ո՞վ գիր։
232 չիք ժամանակեան, թէ՞ անմահ։
233 չիք նեղիմ յեղանակաւ քոյ։

Մեծատանց ակն ոչ առնու եւ յիշխանաց ոչ երկնչիս, ի սրբոց ոչ պատկառես եւ ի պղծոց ոչ խորշիս, ի ծանօթից ոչ ակն ածես եւ ի մերձակայից ոչ ամաչես, ի հզօրաց ոչ զարհուրիս եւ տկարաց ոչ ողորմիս, ի փառթամաց ոչ վեհերիս եւ աղքատաց ոչ խղճաս: Առ Նրեաս յանդիմանես եւ զէմընդդէմ նախատես, յայտնապէս խայտառակես եւ ի հրապարակս պարսաւես, ի բազմաց միջի ձաղակեծես եւ աշխարհալուր համբաւես, զծածուկն յայտնես եւ զխորհուրդս սրտից յայտնապէս առնես, զթաքուցեալ պատմես եւ զանճառելին ի լոյս ածես, հրապարակագոյժ զանառելին առնես եւ առաջի բազմաց ամաչեցուցանես, երկեցուցանես, զարհուրեցուցանես, ի զղջումն ածես, յուղղութիւն կոչես, յուսա||դրես, նորոգես, հաստատես, փրկես, կանգնես, փառատես, աստուած գործես զմեղաւորս: Ով գիր սքանչելի, հիանալի, զարմանալի, գովելի, փառելի, սիրելի, հրաշալի, պիտանի, բաղձալի, փափագելի, ըղձալի, տենչալի: Պարգեւօղն քո աւրհնեալ յամենայնի[234]:

298բ

Գիր[235] նախագոյն զտեալ[236] յԵնովքայ, որ եօթներորդ էր յԱդամայ, փոխեցելոյն ի փառս անպատումս գերահրաշ փառօք[237], երկրորդ՝ զտեալ առ աշտարակին, ի կաւեղէն թրծեալ աղիւսի[238] տառատպեալ, երրորդ՝ Քաղդէացիք արարին իւրեանց գիրս սովորաբար, չորրորդ՝ լատինացիք զնոյն հոգս յանձին կալեալ արարին իւրեանց գիրս վասն կրթութեան, հինգերորդ՝ Մովսէսին, որով գրեաց զօրէնս աստուածագիրս եւ ետ ազգին իւրոյ առ ի վարժումն, վեցերորդ՝ Հայոց պարգեւեալ գիր ի ձեռն սրբոյն Սահակայ աղօթիւք մեծին Մեսրոպայ, եօթներորդ՝ պարտ է ասել եօթներորդ, յորժամ բանին դպրութիւնք հրաշիցն ի լրման եւթանց կենցաղոյս եւ ի մուտ ութերեկին եւ այն ամե||նեցուն հասարակաց է եւ առանց ուսանելոյ[239]: Եւ արդ, որպէս ասացաւ, նախ Ենովք արար գիրս վասն այնր պատճառի, զի մի՛ մոռասցին աստուածային շնորհքն եւ իմաստքն, զոր ետ առաջին մարդոյն, որով կոչեաց զանուն կնոջ իւրոյ կեանս եւ եդ անուանս ամենայն կենդանեաց: Եւ զի առաջինքն երկարակեցութեամբ ուսուցանէին զմիմեանս, իսկ ի կարճակեաց լինելն մարդկան ոչ կարէին վարժել եւ կրթել, վասնորոյ հնարեցան գրով թողուլ զյիշատակ անցելոց իրաց եւ զուսմունս բանից:

299ա

Եւ արդ, որպէս ասացաւ, թէ ամենայն ազգ հնարիւք արարին գիրս իւրեանց լեզուին, բայց միայն Իսրայէլ եւ Հայք, որ յաստուծոյ ընկալան, եւ այս՝ ոչ փոքրագոյն պատիւ ազգիս մերում, զի որպէս ի հինն Իսրայէլ միայն պատուեցաւ աստուածագիծ տախտակօքն, ի նորս Հայք միայն ընկալան յաստուծոյ աստուածատուր պարգեւ՝ զգիր ազգիս մերոյ: Եւ առաքեալքն տեառն, վասն զի մաքուր պահեցին զմիտս իւրեանց յախտից մեղաց, ի սիրտս իւրեանց գրեալ ունէին զպատուիրանս տեառն, վասն այսորիկ ոչ կամէին գրով տալ զաւետարանն Քրիստոսի, զի զամենեսին

---

234 չիք Մեծատանց ակն ոչ առնու... աւրհնեալ յամենայնի:

235 Եւ արդ գիր:

236 ծանուցեալ:

237 գերահրաշս փխ անպատումս գերահրաշ փառօք:

238 Նիւթի փխ թրծեալ աղիւսի:

239 ուստի ընկալեալ Քաղդէացիք, եւ փոխարկեալ լատինացիք եւ ամենայն ազգի մարդկան հնարիւք ասացեալ եղեւ գիր բաց ի հայոց եւ յեբրայեցւոց, որոց յԱստուծոյ պարգեւեալ եղեւ փխ երրորդ՝ Քաղդէացիք... առանց ուսանելոյ:

299բ կամէին իբրև զինքեանս լինել։ Իսկ զի մեք ոչ կարացաք այնպիսի սի||րտ սուրբ ստանալ, վասնորոյ Հարկ եղև գրով ընդունել զպատուիրանս աստուծոյ։ Եւ քանզի սովոր է աստուած ի ձեռն միջնորդի զբարիս պարգևել ազգի մարդկան յամենայն ժամ, և որպէս ի Հինն ի ձեռն նախամարգարէին Մովսեսի ետ աստուած Հնոյն Իսրայէղի զաստուածագիծ տախտակսն, որովք Հաստատեցանն ի գիտութիւն ճշմարտութեան, նոյնպէս և մեզ ի ձեռն սրբոյն ՍաՀակայ և երանելւոյն Մեսրոպայ շնորՀեաց աստուած զգիրս, որով զերծաք ի խաւարէ տգիտութեան և ծանեաք զլոյս ճշմարիտ աստուածգիտութեան։

Եւ սուրբն ԻսաՀակ, խնդութիւն անուն կոչեցեալն, մեծ խնդութիւն գործեաց ազգիս իւրով արիական քաջութեամբն։ Եւ մեծն Մեսրոպ սրբէական անուամբ յորջորջեալ յանուանակցութիւն վեՀիցն զերգակցութիւն ի լոյս ածեալ մանկանց Սիոնի իւրով քրտնաջան աշխատութեամբն։ Եւ վասնզի սոքա լծակցեցան սիրով Հոգոյն առ իրեարս և խնդրեցին աղօթիւք յաստուծոյ կապակցութեամբ սիրով սրբութեան ի սէր սիրոյն միացեալք, որով կատարիւր նոցա տիրապէս պայման խնդրոյ իբր սրբոց և սիրելեաց աստուծոյ, ըստ տէրունական Հրամանին, որ ասէ. ուր

300ա երկու կամ Էրեք ժո||ղովեալ են յանուն իմ, անդ եմ ես ի մէջ նոցա։

Եւ սոքա այսպիսի Հաւատով և յուսով ձիգ և պինդ ունելով զշաղկապ սիրոյն առ աստուած և զփրկութիւն Հոգւոր վաստակոց ի գործս առաքինութեան միշտ լծակցելով Հանգոյն Մովսեսի և ԱՀարոնի, Յեսուայ և Եղիազարու, Դաւթի և Յովնաթանու, Պետրոսի և Պօղոսի, Յակոբայ և ՅոՀաննու, Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի, սրբոյն Գրիգորի և Տրդատայ, որոց առաքինութեանցն Հետևողք գտան և շնորՀացն ժառանգաւորք, որով սխրալիք ցուցան ի մարմնի և սքանչելի ցուցաւ աստուած ի խորՀուրդս և ի գործս նոցա[240]։

Եւ արդ, եկայք այժմ և մեք միաբան ժողովեալքս ի տօնախմբութիւն երանելեացս, աղաչեսցուք զտէր ասելով՝ ի յիշատակի սոցա պար-

---

240 Եւ զի ի սկզբան լինելութեանն անախտ զգայով բնութեան մարդկան, անմոռաց մնայր ի մտի մեծամեծ գործք բարեգործին աստուծոյ։ Իսկ ի յանցանելն ընդ պատուէր մեզաց բնութեանս մերոյ, մոռացօնք տիրէր բնութեանս, ուստի Հնարեցան ի ձեռն գրոյ վերստին արծարծումն առնել ի բնութեանս յիշատակաց սքանչելեացն աստուծոյ, վասն որոյ և առաքեալքն տեսան զի անախտ ստացան բնութիւն, ոչ յօժարէին գրով տալ մարդկան զՀրաշագործութիւն տնօրէնութեան բանին աստուծոյ, զի զամենայն մարդիկ կամէին իբրև զինքեանս լինել, անմոռաց ունելով զյիշատակս ի մտի և յորժամ ոչ զօրէաք այսմ բաւականանալ, Հարկեցան գրով տալ Հաստատելոց զպատուիրանս աստուծոյ։ Եւ արդ, երբայեցւոցն, որպէս ասացաւ, պարգևեալ եղև գիր յաստուծոյ ի ձեռն մեծին Մովսեսի նախամարգարէի, առնելով նոցա օրինագրութիւնս ըստ Հրամանին աստուծոյ։

Իսկ ի նորումս մեզ միայն շնորՀեցաւ գիր յաստուծոյ ի ձեռն սրբոյն ՍաՀակայ, որ խնդութիւն կոչի, և մեծին Մեսրովբայ, սրովբէատեսն անուան, երանելեացն անձանց, որք լծակցեցան սիրով Հոգւոյն առ իրեարս և խնդրեցին աղօթիւք յաստուծոյ, կապակցութեամբ սիրով սրբութեան ի սէր սիրոյն միացեալք, որով կատարիւր նոցա տիրապէս պայման գրոՀի միաբանութեանն, որք ձիգ և պինդ ունէին զմիաբանութիւնն Հանգոյն Մովսեսի և ԱՀարովնի, Յեսուայ և ՓենեՀեզի, Դաւթի և Յովնաթանայ, Պետրոսի և Պաւղոսի, ՅոՀաննու և Յակոբայ, Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի, Տրդատայ և Գրիգորի, որոց առաքինութեանցն Հետևօղք գտան և շնորՀացն ժառանգք եղեն, որով սխրալի ցուցան ի մարմնի և աստուած փառաւորեցաւ ի խորՀուրդս նոցա, զի փառաւորիչս իւր փառաւորէ փառաւորեալն յաւիտեան փն եւ արդ, որպէս ասացաւ... ի գործս նոցա։

*ցնես մեզ տէր զերկնային քո զխաղաղութիւնդ, զոր խոստացար սրբոց քոց առաքելոցն, ի յիշատակի սոցա շնորհեա տէր եկեղեցւոյ քում սրբոյ հաստատութիւն և անձանց մերոց զփրկութիւն և զմեծ զողորմութիւն, ի*
**300բ** *յիշատակի սոցա թող տէր զյանցանս մեր ա||մենեցուն և զօրացո զմեզ յերկիւղ քո և ի սէր և ի պահպանութիւն պատուիրանաց քոց, ի յիշատակի սոցա տէր շնորհեա հանգիստ և ողորմութիւն հոգոցն հանգուցելոց, որք հաւատով ի քեզ ննջեցին և դատաւորեա զնոսա ընդ սուրբս քո յաջակողմեան քում։ Ի յիշատակի սոցա և մեք փառաւորեսցուք զամենասուրբ երրորդութիւնդ՝ զհայրդ երկնաւոր և զորդիդ միածին և զհոգիդ ճշմարիտ, համագոյ և համազօր հօր և որդւոյ*[241]*, որ եմդ միշտ*[242] *աւրհնեալ, գովեալ և բարեբանեալ և առաւել փառաւորեալ և երկրպագեալ յամենայն արարածոց, այժմ և միշտ և [յաւիտեանս]*[243]*։*

П. П. АНТАБЯН

# ПАНЕГИРИК ВАРДАНА АРЕВЕЛЦИ, ПОСВЯЩЕННЫЙ ИЗОБРЕТЕНИЮ АРМЯНСКОГО АЛФАВИТА

(Р е з ю м е)

В 1853 г. во втором томе венецианской серии малых памятников армянской письменности «*Սոփերք հայկականք*» („Писания армянские") был издан анонимный панегирик, посвященный изобретению армянских письмен. В Матенадаране им. Маштоца в рукописи № 8775 (1415 г., Иерусалим) тот же панегирик переписан как произведение Вардана Аревелци вместе с четырьмя другими его речами-панегириками. Этот список отличается от опубликованного варианта также своим объемом— в нем имеется около 300 строк, которых нет в венецианском издании.

Вторично публикуя панегирик Вардана Аревелци „Хвалебное слово о Сааке и Месропе и других переводчиках", вместе с разночтениями венецианского издания, подготовитель текста во вступительной статье говорит об историческом значении этого памятника, о его источниковедческой ценности, касается вопроса о его источниках и художественных достоинствах и склоняется к тому мнению, что этот текст—интересное явление не только в богатом наследии В. Аревелци, но и в истории всей средневековой армянской литературы.

---

241 *Եւ այժմ, արդ, եկայք և մեք միաբան ժողովեալքս փառաւորեալքս ի փառս փառօք պսակեալ հարցն մերոց սրբոց, զփառաւորիչն նոցա զՔրիստոս փառօք փառաւորեսցուք* փխ *եւ արդ եկայք... հօր և որդւոյ։*

242 *որ է* փխ *որ եմդ միշտ։*

243 *արարածոց իւրոց. ընդ հօր և ընդ հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից փխ արարածոց... [յաւիտեանս]։*

P. P. ANTABIAN

## LE PANEGYRIQUE DE L'INVENTION DE L'ALPHABET ARMENIEN DÛ A VARDAN AREVELTSI

En 1853, dans le second tome de la série de Venise des petits monuments littéraires arméniens *«Սոփերք հայկականք»* („Livres arméniens") parut un panégyrique anonyme de l'invention de l'alphabet arménien. Ce même panégyrique se trouve recopié dans le ms n° 8775 (Jérusalem, 1415) comme l'oeuvre de Vardan Arévéltsi avec quatre autres discours panégyriques de ce dernier. Cette copie diffère également de la variante publiée, par son volume, excédant d'environ 300 lignes, l'édition de Venise.

En publiant de nouveau ce panégyrique dû à Vardan Arévéltsi et intitulé „Eloge de Sahak et de Mesrob et d'autres traducteurs", et l'accompagnant des variantes de l'édition de Venise, l'éditeur actuel du texte s'attache dans son introduction, à en dégager l'importance historique et la valeur en tant que source, à mettre en relief les qualités littéraires en même temps qu'il attire notre attention sur les sources qui s'y rapportent et conclut que ce texte est une révélation dans le riche héritage de Vardan Arévéltsi aussi bien que dans l'histoire de la littérature arménienne du moyen âge.